# ԱՆՅԱՅՏ ԱՂԱՆԴԱՒՈՐՆԵՐ ՀԱՅՈՑ ՄԷՋ

ԺԶ. ՈՒ ԺԷ. ԴԱՐԵՐՈՒՄ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԺԵ.

# ԱՆՅԱՅՏ ԱՂԱՆԴԱՒՈՐՆԵՐ ՀԱՅՈՑ ՄԷՋ

ԺԶ. ՈՒ ԺԷ. ԴԱՐԵՐՈՒՄ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1926

# ԱՆՑԱԾ ԱՂԱՆԴԱՒՈՐՆԵՐ ՀԱՅՈՑ ՄԷՋ

ԺԶ. ՈՒ ԺԷ. ԴԱՐԵՐՈՒՄ

---

ՅԱՒԵԼՈՒԱԾ

ԲԱՆԱՍԷՐԻ ՕՐԱԳՐԻՑ

---

ԳՐԵՑ

Թ. ԱՒԴԱԼԲԷԿԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1926

# Ա.

## ԱՆՑԱԾ ԱՂԱՆԴԱՒՈՐՆԵՐ ՀԱՅՈՑ ՄԷՋ

### ԺԶ. ՈՒ ԺԷ. ԴԱՐԵՐՈՒՄ

—

### Ա.

*Հայ հանրային հոսանքների ու աշխարհայեացքների պատմութեան համար մեծ նշանակութիւն ունի աղանդների ուսումնասիրութիւնը։*

*Միջին դարերում ինչպէս ամէն տեղ, այնպէս եւ Հայաստանում եկեղեցին լինելով տիրող դասակարգի կազմակերպութիւններից մէկը՝ ենթարկում էր այն բոլոր գաղափարական յարձակումներին, որոնք ուղղւում էին իշխող կարգերի դէմ։ Ուրիշ երկիրների նման մեր աշխարհում էլ այս բողոքներն ստանում էին կրօնական-աղանդաւորական կերպարանք։ Հանրային ընդդիմադիր հոսանքը Հայաստանում ու հայ միջավայրում էլ հրապարակ էր գալիս հերձուածի դրօշով։ Միջնադարեան ամբողջ հազարամեակի ընթացքում այս հանրային ընդդիմադիր կուսակցութիւնը իր աջակողմեան ու ձախակողմեան թեւերով փոթորկել է հայ իրա-*

կանութիւնը բորբորիտոն, մծղնէ, պօղիկեան, թոնդրակեցի, արեւորդի ու այլ անուններով՝ մերթ արտայայտուելով իբրեւ յարատեւ ու լայն զանգուածային հոսանք եւ երբեմն էլ առկայծելով իբրեւ անձուկ ու վաղանցուկ, բայց այնուամենայնիւ նշանակալից միջադէպ։

Մի ժամանակ մեզանում հեղինակները հայ աղանդների մասին խօսելիս իրենց ասելիքը վերջացնում էին Լաստիվերացու, Նարեկացու, Մագիստրոսի դարաշրջանի թոնդրակեցիներով, որոնք այսպիսով ներկայանում էին հայ աղանդաւորական շարժման վերջին օղակ։ Քչերն էին յիշում այնպիսի մի երեւոյթի մասին, որպիսին էր Դաւիթ Տարեցու կամ, աւելի ճիշտը, Գառնեցու երեւոյթը Հայոց ՈՂԹ (= 1250) թուականին։ Տիրող կարծիքն ընդհանրապէս այն էր, որ միջնադարի աւարտի հետ աղանդաւորական հուրն էլ մարում է հայ ժողովրդի ծոցում։

Այս դրութիւնը տեւում է մինչեւ 1880 թուականը, երբ հետախոյզ Ալեքսանդր Երիցեանը յայտնագործում է[1], թէ նոր դարի հարիւրամեակներում, յատկապէս ԺԸ. ու ԺԹ. դարերում գոյութիւն է ունեցել մի աղանդաւորական շարժում, որ Տաճկահայաստանից անցել է Ռուսահայաստան, բաւական ժամանակ յարատեւել է Շիրակում՝ վերջ ի վերջոյ յարելով ու ձուլուելով բողոքականութեան հետ։ Գրականութեան մէջ այս հերձուածը յայտնի է «Նոր

---

[1] «Փորձ», Հանդէս, Թիֆլիս 1880։

թոնդրակեցիք» անունով, որոնց պատմութեան ամենահին թուականը 1782ն է, երբ գրուել է այս աղանդի դաւանանքը պարունակող աշխատութիւնը, որ կրում է «Բանալի Ճշմարտութեան» անունը։

Երկցեանի յայտնագործութիւնը, որ հայ աղանդների պատմութիւնը հարստացնում էր նոր օղակով, ուսումնասիրողների առաջ դնում էր մի կարեւոր հարցմունք, որին պէտք էր պատասխանել։ Եթէ հայ աղանդաւորական շարժումը, որ կարծում էին, թէ դադարել է թոնդրակեցիների պատմութեամբ չքանալով կամ առ առաւելն Դաւիթ Ծարեցու միջադէպով, կրկին մխում եւ վառւում է ԺԸ. ու ԺԹ. դարերում, ապա անհնարին է, որ նոյն շարժումը լիովին դադարած կամ չքացած լինի միջին ժամանակաշրջանում, այն է 1250 թուից մինչեւ 1782ը։ Անհնարին է, որ չլինէին միջնորդ օղակներ ԺԴ. ԺԵ., ԺԶ. ու ԺԷ. դարերում էլ։

Որքան էլ a priori ընդունելի լինէր հայ աղանդաւորների գոյութիւնը յիշեալ դարերում, այնուամենայնիւ 1880 թուականից մինչեւ օրս, վերջին 50 ամեակի ընթացքում չեն առաջադրուել թանձրացեալ տուեալներ, որոնք ապացուցէին, թէ Դաւիթ Ծարեցուց մինչեւ Յովհաննէս Վահագնունին — նոր թոնդրակեցուց նշանաւոր ներկայացուցիչը — ճիշտ որ եղել են աղանդներ ու աղանդապետներ։ Գրութեանս նպատակն է մատնանշել ու ընդգծել մի քանի հատուածներ, որոնք վկայում են, թէ գոնէ ԺԶ.

ու ԺԷ. դարերի մասին կարող ենք ասել, որ այն ժամանակ մեզանում գոյութիւն են ունեցել ա-ղանդաւորական շարժումներ։

Բ.

Այս հարիւրամեակներում մի աղանդաւո-րական շարժում բռնկում է բուն Հայաստա-նում, իսկ միւսը՝ հայ գաղութներից մէկում։

Բուն երկրում հերձուածողական շարժում սկսողը մի խորհրդաւոր անձնաւորութիւն է, որի մասին պատմում են Զաքարիա սարկաւագն ու Գրիգոր Վարդապետ Դարանաղցին։

Ի՞նչ էր նրա իսկական անունը, յայտնի չէ։ Զաքարիան նրան կոչում է *Մեխլու բաբա* կամ *Մեխլու վարդապետ*, իսկ Դարանաղցին՝ սոսկ *Մխելոյ*։

Նրա կեանքի առաջին շրջանի մասին տե-ղեկութիւններ տալիս է գլխաւորապէս Զաքա-րիան։ Վերջինիս ասելով՝ Մեխլուն "էր այր մի Աղուան, որ այժմ ասեն Ուտի, ի Գանձակ քա-ղաքէն Աղուանից,,։ Վանական կրթութիւնն ստա-նում է Աղուանից Յովհաննէս Ը. կաթուղիկոսի օրով Գանձասարում, որտեղ նրան տալիս են աւագ սարկաւագութեան աստիճան։ Մեխլուն ճարտար ու լեզուանի մարդ է լինում։ Վանքի պիտոյքների համար նրան ուղարկում են գա-ւառ, թերեւս պտղի եւ այլն հաւաքելու, բայց սա՝ օգտուելով առիթից՝ քարոզչութեան է սկսում։

«Իսկ նա գնացեալ ձեւացոյց զինքն վարդապետ եւ քարոզէր թիւր եւ անուղիղ հայհոյանս եւ չարափառութիւնս[1]»։

Պանձասարում լսում են գաւառում սկսուած շփոթի մասին։ Կաթողիկոսը յետ է բերել տալիս քարոզիչ սարկաւագին, կարգալոյծ անում եւ պատուիրում է փակում միայ, իբրեւ «ծառայ միարանից», «որպէս անասունն մսղտեալ»։ Սակայն միջադէպը սրանով չէ վերջանում։ Գործը հասնում է Պանձակի իշխան Գուռութ-խանին, որը բռնում է Մեխլուի կողմը. բերել է տալիս կաթողիկոսին, տուգանում եւ հարկադրում, որ Մեխլուին նորից կարգաւոր ձեռնադրէ եւ քարոզելու արտօնութիւն տայ։ Կաթողիկոսը երկիւղից կատարում է խանի պահանջը, եւ Մեխլուն այնուհետեւ սկսում է բացայայտ քարոզչութիւնը։

Իսկ Դարանաղցին Մխլույի կեանքի առաջին շրջանի մասին պատմում է համառօտակի։

«Եւ էր այս Մխլոյս յերկրէն յԱրեւելից եւ եկեալ ի Սահաթի-փոսին յԱրարատին եւ յայլ շրջակայ գաւառս նոցա եւ վարդապետական անուամբ շրջելով յամենայն արեւելայան կոյս մինչեւ ի Պարսկաստան...[2]»։

Ի՞նչ էր քարոզում Մեխլուն։

---

1 Զաքարիայ սարկաւագի «Պատմագրութիւն», Հատոր Ա. Վաղարշապատ 1870, էջ 47։

2 Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղեցւոյ «Ժամանակագրութիւն», Հրատ. Մեսրոպ վարդապետ Նշանեան, Երուսաղէմ 1915, էջ 456։

Նրա քարոզն, ինչպես պատմում են Զաքարիան ու Դարանաղցին, որոնք կարող էին նրան վարկաբեկելու նպատակով նույն իսկ ուռեցնել նրա ասածները, շատ չափավոր բնույթ ուներ։ Նա չէ քննադատում եկեղեցու աշխարհայացքի հիմնական կետերը, դավանանքը, վարդապետությունը, խորհուրդները։ Մարդեղությունը ժխտողներից չէ և ոչ էլ խաչամարտ է։ Մեխլուն դժգոհ է եկեղեցական նվիրապետությունից, դեմ է միմիայն կուսակրոնության կամ, ինչպես ասում են, «սև հոգևորականության», որը նրա աչքով պղծակրոնություն է լոկ։

«Նա ելեալ քարոզէր զարտուղի։ Նա եղեւ թշնամի արեղայից եւ ուր տեսանէր արեղայ, մերկացուցանէր եւ բրածեծ առնէր։ Նա ասէր ցժողովուրդն. ով որ արեղայի տայ ինչ, ինքն ի դժոխքն իջանէ։ Քանզի ոչ է արժանի արեղային առնել պատարագ, վասն զի շնացողք են եւ պիղծ։ Այլ երիցուն արժան է առնել պատարագ, զի սուրբ ամուսնաւ կայ...[1]»։

Զաքարիայի ասելով՝ Մեխլուն այնքան է առաջ գնում արեղահալածության մեջ, որ սկսում է սևագլուխների ջարդ քարոզել։ Քանաքեռի եկեղեցում տված քարոզի ժամանակ, — ասում է Զաքարիան.

«Ղօղանջէր դէպ յարեգական եւ ասէր. ով ոք որ սպանանէ արեղայ մի, այլ ոչ գ՟ղ հար-

1 Զաքարիա. նոյն հատոր, էջ 48—49։

ցուցէ մեղաց նորա, այլ երթայ յարքայութիւն Աստուծոյ[1]»։

Զաքարիան Մեխլուին ժամանակակից չէ, բայց մօտ է ժամանակով։ Աղանդաւորի քարոզչութեան տարիներում պատմագիրը կամ ծնուած չէր և կամ շատ փոքր էր[2], և վերջինս առել է առաջնի ժամանակակիցներին միայն՝ սրանց պատմածներից քաղելով իր տեղեկութիւնները նրա մասին։ Դաւրիժեցին, ընդհակառակը, ժամանակակից է, բայց բուն երկրից հեռու գտնուելով Մեխլուի մասին նոյնպէս «ի լրոյ» է պատմում։ Սակայն և այնպէս թէ Զաքարիայի ու թէ Դաւրիժեցու ասածները իրար բռնում են և հաստատում, որ նրանց պատմածի կորիզը ճիշտ է և ոչ թէ յերիւրած։

Դաւրիժեցին էլ է գրում, որ Մեխլուի քարոզը բացառապէս ու առհասարակ կուսակրօն հոգևորականութեան դէմ էր։

«Ոչ երիցոյ և ոչ աշխարհականաց հակառակութիւն չունէր, այլ միայն ի հետ սեւագլխոց։ Զնա լուացն և վատացն միապէս մարտնչէր և մաքառէր[3]»։

Ըստ Զաքարիայի՝ երբ Մեխլուն իր հետևորդներով Աղուանից աշխարհից գալիս էր

---

1 Զաքարիան, նոյն հատոր, էջ 52։

2 Զաքարիան Յովհաննավանքի կոնդակը գրել է Հայոց ՌՃԼԶ (— 1687) թուականին 60 տարեկան հասակում, ուրեմն ծնուել է մօտաւորապէս 1627 թին։ Հմմտ. Զաքարիա, Գ. հատոր, Վաղարշապատ 1870, էջ 2։

3 Դաւրիժեցի, էջ 457։

Գեղամայ ծովակը, «կապեալ ունէր հինգ ա-բեղայ[1]»։ Իսկ ըստ Դարանաղցու՝ նա աբեղահալածութեան ու աբեղաջարդի հրաման էր ձեռք բերել պարսից շահից ու խաներից։

«...Ի վերայ արեւելից սեւագլխացն հրովարտակ հանելով ի Շահէն եւ այլ խաներացն, որ եւ գտանիցէ թէ աբեղայ անուն, թէ եպիսկոպոս անուն եւ թէ վարդապետ անուն, սպանանիցէ եւ զբազում հալածեցէ յաշխարհէն Հայոց, որպէս եւ արար բազմաց[2]»։

Բացի այսպես ընդհանուր բառերով գրելուց, թէ «զարեանց հեղմունս գործէր[3]», Դարանաղցին պատմում է մի յատուկ դէպքի մասին էլ։ Մեխլուն հետապնդում է մէկ եպիսկոպոսի ու մի աբեղայի՝ սպանելու նպատակով, իսկ սրանք փախչելով մի պառաւի տան՝ թաքնում են ցորենի փեթակի մէջ՝ «թաղեալ ի ցորեանն»։ Հալածիչը կասկածելով, թէ ցորենի մէջ մարդ կայ, նիզակով հարուածում է «ի մէջ ցորենոյն»։ «Չգիտացաք, — աւելացնում է Դարանաղցին, մեռանիլն եւ զկեալ նոցա[4]»։

Իսկ Զաքարիան գրում է, թէ նրա քարոզից ազդուած՝ ոմանք փորձում էին աբեղայ սպանել, որ արքայութիւն գնան։ Այսպիսի մէկն է Քանաքեռցի Թութակենց Յակոբը, որը երբ գնում է Մեխլուի մօտ իւր մեղքերը խոստովանելու եւ

---

1 Զաքարիա, Ա. հատոր, եր. 49։
2 Դարանաղցի, եր. 470։
3 Դարանաղցի, եր. 471։
4 Դարանաղցի, եր. 472։

ապաշխարութիւն խնդրելու, արեղահալածից պատուէր է առնում.

«Երբ, ասան արեղայ մի եւ բեր ի մօտն եւ յարենէն, զի կերայց զմիսն եւ արբից զարիւնն եւ արարից պատարագ եւ զքառասնամեայ մեռեալն յարուցից, յայնժամ լիցի թողութիւն մեղաց քոց.:

Շարունակութիւնն այնքան հոյուերգական է եւ այնքան գունեղ է պատմած, որ աւելորդ չենք համարում ամբողջութեամբ մէջ բերել.

«Եւ համատացեալ յիմարն այն եւ ի նոյն գիշերին գնացեալ ի դուռն վանիցն եւ ասաց էր, զի թերեւս ելցէ Աքրայէլ արեղայն... զի նա էր փոքր քան զայլսն։ Եւ տեսանէ, զի ահա ելն Փիլիպպոս եպիսկոպոսն։ Եւ այլն Յակոբ յարեաւ ի վերայ նորա, եւ կարկատեաց զնամակին ի վերայ գլխոյ եպիսկոպոսին։ Եւ ասէ եպիսկոպոսն.

Գտուեցա՞ր, Յակոբ։

Եւ ասէ Յակոբն.

— Արեղայ քեզ, Տէր Փիլիպպոս. զի ես կարծեցի, եթէ Միրանն ես։ (Զի առաջին անուն Աքրայէլին Միրան էր։)

Եւ պատմեաց նմա Յակոբն զամենայն։

Իսկ եպիսկոպոսն խրատեաց զնա եւ ասէ.

— Նա ոչ պատարագող է եւ ոչ մեռեալ յարուցանող, այլ այս է, զի զքեզ մարդասպան առնէ եւ արեան տէր։

Եւ գնաց, էլ Յակոբն ո՛չ եւ աւաղ կարդալով ինքեան[1].:

---

1 Զաքարիա, Ա. հատոր, էջ 52—53.

Անշուշտ Մեխլուի արիւնարբութեան մասին պատմածների մէջ չափազանցութիւններ կան. Սակայն մի բան անկասկած է. Յանձին Մեխլուի հայ ազատագրական շարժումը հանդէս էր բերում մի պարագլուխ, որ չէր դաւանում «մի հակառակ կալ չարին» կրօնական սկզբունքն, այլ կռուի տենչով համակուած՝ պատրաստ էր մաքառելու հասու միջոցներով, քննադատելու նաև հրով ու սրով.

## Գ.

Աբեղահալածութիւնը զանգուածային շարժում է եղել. Զաքարիան ասում է, թէ Մեխլուին յարել էին աւելի քան հինգ հարիւր հոգի «ոչ միայն գռեհիկ աշխարհականք, այլ և ազէտք երիցունք և փարթամք և մեծազգի մարդիկք».

Աղանդն ունէր նաև որոշ կազմակերպութիւն. Հինգ հարիւր հետևորդների միջից Մեխլուն ընտրել էր տասներկու կարիճ ու զօրեղ մարդ, նրանց մէջքին թուր կապել, ձեռները տուել լախտ, «որ է թափուզ», և այս թոփուզաւորներին անուանել առաքեալ. Նա ինչ որ ինքը կամենում էր, սրանց ձեռքով էր կատարում, թէ ծեծում էր, թէ բանտարկում և այլն.

Մեխլուի շարժումն աչքի է ընկնում նաև երկու յատկութեամբ, որոնցից առաջինն անընչասիրութիւնն է, ճգնական սակաւապէտութիւնը.

«Ոչ առնոյր ինչ յումեքէ... եւ ասէր. «Քրիստոսի աշակերտացն չէ պիտոյ առանել ոսկի կամ արծաթ եւ կամ զգենուլ հանդերձս ազնիւս. այլ մաղ եւ շալ պիտոյ է նոցա զգենուլ[1]»։

«Ոչ ուտէր եւ ոչ ըմպէր, — պատմում է նոյնը Գուարանացին, — եւ ոչ առնոյր ինչ յումեքէ եւ էր քրձազգեաց եւ խարազնազգեստ[2]»։

Շարժման երկրորդ գիծը հաւասարութիւնն է, քրիստոնէական սպառողական համայնավարութիւնը։

«Ոչ առնոյր ինչ յումեքէ, այլ ձեռամբ երկոտասանիցն եւ բաժանէր հինգ հարիւրիցն»։

Աղանդաւորների այս հաւասարութեան զոհ է գնում Քանաքեռցի Եղիայի պառաւ կնոջ հորթը, որ բռնում են՝ ասելով. «Մատաղ է եկեալ վարդապետին»։

«Ջեռին, — ասում է Զաքարիան ծաղրելով, — որթն եւ մատն մատն բաժանեցին, մինչեւ եւ կաշին եւ զապուտան եւս բաժանեցին, որպէս օրհնութիւն[3]»։

Նշանակալից է, որ ըստ Զաքարիայի՝ Մեխլուն ունէր նաեւ «գիրք մի ժողովածու եւ նովաւ ասէր, զինչ որ ասէր»։ Սակայն այն հատուածը, որ Մեխլուն կարդում է Երեւանի վիճաբանութեան ժամանակ, ուշագրաւ աւետարանից է։

«Եւ բացեալ զգիրքն եւ ասէ. սա գրեալ

---

[1] Զաքարիա. Ա. 49։

[2] Գուարանացի. 456։

[3] Զաքարիա. Ա. 51—52։

է վասն սեւագլխոց, զի ասէ. մի՛ ստանայք մի՛ ոսկի եւ մի՛ արծաթ, եւ այլն[1]:

Արդեօք աբեղահալածը գործ էր ածում խնկապէս մի ժողովածու, որ կազմուած էր տարբեր երկրից առած քաղուածներից, թէ հէնց աւետարանն էր նրա նեցուկը. հնար չկայ որոշելու: Թեեւս Զաքարիայի համար դժուար էր խոստովանել, թէ աղանդաւորը բացառապէս աւետարանի վրայ էր հիմնւում: Դարանաղցին աւելի որոշ է շեշտում, որ Սմբատն սուրբ գրքով ու այլ կանոնական գրքերով չէր վարդապետում:

«Նա ոչ օրինօք աստուածաշունչ գրոց վկայութեամբ խօսէր եւ ոչ կանոնիւք սուրբ հարցն երից սուրբ ժողովոցն եւ ոչ սուրբ հարանց գրոցն, այլ մտացածին բանիւք յիւրենէ, զոր ինչ բղխէր ի չար դիւական ոգւոյն, զայն խօսէր եւ մաքառէր ընդ ուխտականսն[2]»:

Ասացինք, որ Աղուանից երկրում Սմբատի հետեւորդների թիւը հասնում էր 500-ի: Սակայն նրա ժողովրդականութիւնը հետեւորդների շրջանակից շատ հեռու է տարածւում: Ճանապարհորդութեան ժամանակ, որ կատարում է Աղուանից երկրից դէպի Երեւան, նրան հետեւում է մի մեծ բազմութիւն:

«Իսկ Ամիրդուլա խանն ելեալ ի բերդէն՝ երթայր ի զնին եւ հայեցեալ տեսանէ բանակն եւ զարհուրեալ հարցանէ.

— Ո՛հ, զի՞նչ է գումարն այն:

---

1 Զաքարիա, Ա. 50—51:

2 Դարանաղցի, 457:

Ասեն.

— «Նա է Մեխլու բաբայն, զոր պատմէին[1]»։

Երեւանից Քանաքեռ հանելիս Նրան խուռն բազմութեամբ ընդառաջում է ամբոխը։ Սակայն Մեխլուին ցոյց տուած ընդունելութիւնը ոչ թէ բերանաբաց հանդիսատեսների գործ էր, այլ զինեալ երկրպագուների։

«Եւ ադէտ ռամիկքն Քանաքեռոյ, յորժամ լուան զգալուստ նորա, գրոհ տուեալ ելին ընդ առաջ նորա, մինչեւ անարգել աղջկունքն եւս գնային ի տես կախարդին այնորիկ, որք երթեալ քսէին զստորոտ հանդերձի նորա յերեսս իւրեանց։ Եւ բազում աղջագուրելով ընդունէին զնա... Եւ առեալ զկախարդն՝ բերին ի Քանաքեռ եւ տարան ի ներքի եկեղեցին։ Եւ ի շրջել տեղայն՝ ելեալ նստաւ ի վերայ սեղանին եւ ղօղանջէր դէպ յարեգայն[2]»։

Տեսանք, որ Զաքարիան ասում է, թէ Մեխլուի շարժմանը մասնակից էին ռամիկներ, քահանաներ եւ հարուստներ։ Դարանաղցին վկայելով, թէ «հաճոյ էր ամենեցուն ադէտ աշխարհականացն իւր անօրէն մոլի կատարելութիւնն[3]», շեշտում է մի հանգամանք, որ շատ բնորոշ է դարի հասարակական շերտերի տրամադրութիւնների ուսումնասիրելու տեսակէտից։

«Ժամանակագրութեան» հեղինակը բազմաթիւ էջերում նիզակ է ճօճում հայ առե-

1 Զաքարիա. Ա. 50։
2 Զաքարիա. Ա. 51—52։
3 Դարանաղցի. 471։

տրական դրամագլխի այն ժամանակուայ ամէնից նշանաւոր հատուածի — նոր ջուղայեցոց դէմ։ Ժամանակագիրը մի շարք յոռի պատկերներով ցուցադրում է, թէ առեւտրական դրամագլխի կուտակումն առաջ էր բերել հին կենցաղի ու աշխարհայեացքի վերաքննութիւն, որի ժամանակ նորադարեան մարմինը թօթափում էր միջնադարեան հողու կապանքները։ Վերջինիս ներկայացուցիչ Դարանաղցին սաստիկ տանջութեամբ խօսելով նոր ջուղայեցիների մասին՝ ասում է, թէ Մեխլուի սկսած շարժումն առանձնապէս նրանց սրտով էր, եւ ամէնից աւելի նրանք էին խրախուսում Մեխլուին ու տարածում նրա համբաւը։

Անկասկած, Մեխլուն հայ առեւտրականների դրօշակիրը չէր, այլ սնանկ զանգուածների, սակայն "դովլաթաւորները" ծափահարում էին մարտնչող ու ահաւոր աղանդահալածին, որովհետեւ սա վարկաբեկում էր կուսակրօններին, որոնք հանրային կեանքի տէր ու տնօրէնն էին։ Կուսակրօնութեան ու աշխարհիկ հոգեւորականութեան նշանաւորներով մղուող պայքարին մասնակցում էին հանրային զանազան շերտեր, որոնցից մէկը քարշում, ձգում էր դէպի վաղօրեայ սակաւապէտ ու ճգնական քրիստոնէութիւնը, միւսը՝ դէպի միջնադարեան աւատական նուիրապետութիւնը, իսկ երրորդը՝ դէպի նորադարեան քաղաքացիական բանապաշտութիւնը։

Դ.

Մեխլուի գործունէութիւնն սկսուել է Աղուանից աշխարհում, Գանձասարի Յովհաննէս Ը. կաթուղիկոսի օրով, այսինքն ԺԶ. դարի վերջին քառորդում։ ԺԷ. դարի սկզբում արեղաղածների այս աղանդապետին արդէն տեսնում ենք Աղուանից երկրի սահմաններից դուրս։

Մեխլուն Գեղամայ գաւառի վրայով ճանապարհւում է Երեւան։ Նրան հետեւում է աղանդաւորների ու համակիրների մեծ բազմութիւն, որոնց մէջ են նաեւ 12 թոփուզաւորները։ Քանաքեռի վրայով Երեւան հասնելով նա ուղղակի դիմում է բերդը, որտեղ նրան սպասում էին "խարտեաշ աղիծը„ — Երեւանի կուսակալ Ամիրգունա խանը, Աւետիս կաթուղիկոսն ու երկու եպիսկոպոս։ Բերդում խանը Մեխլուին ենթարկում է հարց ու փորձի, ապա ձեռաց մի հրապարակական բանավէճ է սարքում, որին մասնակցում են աղանդապետն ու կաթուղիկոսն, իբրեւ հակառակորդներ։ Գառնեցի Զաքար-բէկը, "որ թողեալ էր զարեղայութիւնն„ թարգմանում էր նրանց ասածները։

"Եւ ապա ասաց խանն.

— Այս ճշմարիտ է (խօսքը վերաբերում է կաթուղիկոսին), իսկ դու հարամզադայ ես, վասն այն ես զգեցեալ զայն հանդերձ, զի պատրես զանմեղ քրիստոնեայսդ։

Եւ հրամայեաց արկանել զնա ի հաւուզն եւ խեղդել ի ջուրն։ Եւ որքան հանէր գլուխն

ի ջրոյն, եւ սպասաւորքն խանին կոխէին ի ջուրն[1]»։

Այնուհետեւ խանը հրամայում է կողոպտել, «իբրեւ ի մօրէ մերկացուցանել». 12 թափուղաւորներին, իսկ Մեխլուին կաթուղիկոսի խնդիրքով հանում են ջրից եւ զինուորներ են նշանակում, որ Երեւանի երկրից հեռացնեն։ Մինչդեռ սպասելի էր, որ այսպիսի անարգանքից ու բռնութիւնից յետոյ աղանդաւորի երկրպագուների թիւը պակասէր, ընդհակառակը, տեսնում ենք, որ զմայլած ամբոխը չի լքում նրան, այլ ուղեկցում է մինչեւ Քանաքեռ։ Այս աւանն էր եկել նաեւ կաթուղիկոսը խանի զինուորներով, որոնք նրան այնտեղից հանելով՝ քշում են Նիգ գաւառը — Արարան։

«Եւ գնաց մինչեւ յԱրզրում եւ անդ. գնամ Երուսաղէմ։ Եւ էր յԱրզրում կեղայցի Պօղոս վարդապետն, եւ առաւ զրոյցն առ նա վասն նորա չարութեանն։ Եւ նա կալեալ զնա՝ էառ զվեղարն եւ զփիլոնն եւ պատուիրեաց ուխտաւորացն Երուսաղէմի ոչ ընդունել զնա ընդ ինքեանս։ Եւ նա այսպէս կորեաւ եւ բարձաւ ի միջոյ՝ ընկալեալ դժոխենական կորուստն[2]»։

Զաքարիան Մեխլուին աչքից կորցնում է Երուսաղէմի ճանապարհին, իսկ Դարանաղցին շարունակում է նրա հետագայ օրերի ու արարքների մասին նորանոր տեղեկութիւններ հա-

---

1 Զաքարիա Ա. 51։
2 Զաքարիա, Ա. 53։

գրել։ Բանից դուրս է գալիս, որ շարժումը կաթողիկոսով, խանով ու ֆերրաշներով չէ վերջանում։ Աղանդաւորական խմորը ծաւալւում է, եւ մինչեւ 1250 թուականին, Դաւիթ Գանձակեցու ժամանակ, հանդէս են գալիս կուսակրօն հոգեւորականութեան տեսաբաններն ու պարագլուխները — «Մեծ վարդապետն Վանական», «եպիսկոպոսն Հաղբատայ տէր Համազասպ», «Թաթի վանից եպիսկոպոս տէրն Գրիգորէս», «վարդապետն Վարդան, զոր Յօժար որդին կոչէին, ինքը՝ պատմագիր Կիրակոս Գանձակեցին եւ ուրիշները, որոնք սաստ, մեղադրանք ու բանադրանք են գրում մոլարին[1], այնպէս եւ այժմ Մեխլուի դէմ ծառանում են ԺԷ. դարի առաջին քառորդի հոգեւորական խոշոր հեղինակութիւնները։

«Եւ լոյս հոգի տէր Կիրակոսն, — պատմում է Գանձակեցին, — եւ Սարգիս ճգնաւոր եպիսկոպոսն եւ Պօղոս վարդապետն եւ Մոլեկէս վարդապետն եւ ամենայն անապատաւորք սաստկական եւ յանդիմանական գիր ուղարկեցին ի վերայ իւրն եւ կամեցան՝ վասն անաստուած գործոցն, զոր առնէր, եւ ապա հազիւ չիջաւ չարն[2]»։

Այստեղ յիշած Կիրակոսը, Սարգիսը, Պօղոսն ու Մոլէկան անկասկած Կիրակոս Տրապի-

---

[1] Կիրակոս Գանձակեցի. «Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1910. էջ 311։

[2] Գանձակեցի. 472։

զանցին, Սարգիս Ցարեննեցին, Պօղոս Քարեցին ու Մովսէս Խոստանանցին են, որոնց այնքան էջեր է նուիրում Առաքել Դաւրիժեցին[1]։

«Եւ զղջացաւ, ասում է Ժամանակագրութեան հեղինակը աղանդապետի մասին, եւ գնաց Երուսաղէմ։ Եւ անդ շատ որք գանգատաւէր էին Գրիգոր եպիսկոպոսին Երուսաղէմայ, եւ նա ի շղթայս էր եդեալ եւ ի բանդի արկեալ, զի տացէ ի ձեռս Պարոնից։ Նա՛ ուխտական տովլաթաւորքն բազում աղաչանօք հազիւ զերծուցեր էին ի ձեռանէ Գրիգոր եպիսկոպոսին, եւ եկեալ էր ի Հալապ։ Եւ մեր երկրէն վաճառական Սափարն ասաց, թէ՝ ի Հալպայ ես բերի մինչեւ ցԱմիթ եւ անտի ի յետ անյայտ եղեւ եւ ոչ որ գիտաց, թէ ուր գնաց[2]»։

Այսպիսով աղանդապետի վախճանը պարուրուած է մթութեան նոյնպիսի քօղով, ինչպէս եւ նրա իսկական անունը։ Ինչ վերաբերում է «Մեխլու» մականուանը, Զաքարիան ու Դարանաղցին տարբեր բացատրութիւն են տալիս սրան։

Ըստ Զաքարիայի՝ «Ինքն զգեցեալ էր զմազեղէնս եւ ի սիրտ մազեղէնին հաստատեալ էր երկուս բեւեռս երկաթեայ՝ հնարիւք եւ ցուցանէր ամենեցուն ասելով։ Այսպէս արժան է զգենուլ արեղայիցն։ Եւ այսպէս տարածեցաւ խաբերայ անուն նորա ի մէջ տաճկաց եւ քրիստո-

---

1 Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ «Պատմութիւն», Վաղարշապատ 1896. գլ. ի ԻԱ., ԻԴ., ԻԴ. էջ 249–313

2 Դարանաղցի. 472։

նէից, որ եւ տաճիկ(ք) կոչէին նմա Մեխլու բաբայ. իսկ հայք՝ Մեխլու վարդապետ[1]»։

Իսկ ըստ Դարանաղցու՝ «Մխլոյ վասն այն կոչէին, որ տէգ ունելով ի ձեռին, որպէս նիզակի եւ նովաւ հարկանէր մահուամբ զսեւագլուխսն... Վասն որոյ Մխլոյ կոչեցին իւր քաջութիւն համարելով[2]»։

---

1 Չամչեան, Գ. 49։

2 Դարանաղցի, 472։ Մեսրոպ արքեպիսկոպոս Սմբատեանը «Նկարագիր սուրբ Սանահնոյ վանաց Սաղիանի եւ մեծ վանորէից եւ ուխտատեղեաց, եւս եւ քաղաքաց եւ գիւղորէից. որք ի Շամախւոյ թեմի» գրքում (Տփխիս 1896, էջ 186—187) գրում է.

«Փախրադին գիւղի մօտ գետի Աղսու գետը նայող անտառի մէջ զառիվայր լանջում է հին աւերակ մայրապառ, հարաւակ քար ու կրով շինած վանք Մխլու վարդապետ անուամբ»։

Ենթադրելով, որ Մխլու վարդապետ «գուցէ Միխայէլ վարդապետ լինի», Սմբատեանը շարունակում է.

«Ըստ աւանդութեան կողմանցս Միխայէլ վարդապետին այստեղ ծառի վրայ մեխելով, բեւեռելով նահատակել են պարսիկները»։

Մեսրոպ արք. Սմբատեանը վանքի անգանի վէմքարի չրջապատը փորել տալով գտնում է արձանագիր ունեցող քարամթի խաչքարեր, որոնցից առաջինը մեր նիւթի տեսակէտից անհրաժեշտաքրքրական է։ Նրա վրայ կարդացւում է.

«Միքայէլ երէց. թվ. ՌԿԸ»։

Արդեօք այս Միքայէլ երէցն է Միխայէլ վարդապետը, որին մեխելով նահատակել են, արդեօք նոյն անձն է Մեխլու բաբան կամ վարդապետը, արդեօք վանքը կրում է արեգահալանի անունը, թէ այն դարում առաւելական ճգնաւոր բեւեռագդեաններից մէկի անունը (հմմտ. Դարանաղցի. 455. Տաթեւացի բեւեռագդեալ անապատաւորի մասին պատմածը). դժուարանում ենք որոշ բան ասելու։ Սակայն ուշագրաւ է երկու հանգամանք. Փախրադին

## Է.

Մեխլուի ժամանակագրանութեան մասին պէտք է ասենք, որ բաւական մութ է այս։ Որոշ թուականներ չկան. [illegible] է ժամանակագրանական սահմաններ գծել։

Ըստ Զաքարիայի՝ Մեխլուն գանձասար է գնացել Աղուանից Յովհաննէս Ը. կաթուղիկոսի ժամանակ։ Թէ այս կաթուղիկոսը երբ է գահ բարձրացել, յայտնի չէ։ Մակար եպիսկոպոս Բարխուդարեանը թէեւ Յովհաննէսի կաթուղիկոսանալը դնում է 1578ին[1], սակայն այն կռուանը, որի վրայ հիմնում է, այն է Արցախի Բարսում գիւղի գրչագիր աւետարանի յիշատակարանը, կրում է հայոց ՌԻԸ թուականը, որ հաւասար է 1579ին եւ ոչ թէ 1578ին[2]։ Նոյն հեղինակը Յովհաննէս Ը-ի մահը դնում է 1588 թուականի ու 1602ի արանքում[3]։ այս թուականների համար Բարխուդարեանը որեւէ հիմք ու աղբիւր չէ մատնանշում, ուստի յիշեալ ժամանակակէտն ընդունելի չէ։ Այսպիսով Մեխլու-ի

---

պահում է Շամախու թեմում, որ նախկին Աղուանից աշխարհի մի մասն է։ Իսկ, ինչպէս պատմում է Զաքարիան, Մեխլուն նոյնպէս Աղուանից երկրից էր։ Երկրորդ՝ վերոյիշեալ խաչքարի տարին, այն է՝ ՌԿԸ = 1619 թուականը համապատասխանում է աղանդապետի ժամանակին։

[1] Մակար եպիսկոպոս Բարխուդարեան, «Պատմութիւն Աղուանից», հատոր Բ. Թիֆլիս 1907, եջ 23։

[2] Մակար եպիսկոպոս Բարխուդարեան, «Արցախ», Բագու 1895, եջ 318։

[3] Բարխուդարեան, «Պատմութիւն Աղուանից», Բ. 59—60։

ժամանակագրութեան հատուածն սկզբնակէտ կարելի է համարել առ այժմ 1579 թուականը միայն։

Արեղահալածի Երեւան քաղաքը գալու ժամանակի սահմանները որոշելու հիմքն Ամիրգունա խանի, ու Աւետիս կաթուղիկոսի ժամանակագրութիւնն է։ Ամիրգունա խանը կուսակալ է նշանակուած Երեւանը տաճիկներից առնելուց յետոյ, որ կատարւում է Շահաբասի ձեռքով 1604ին[1]։ Ամիրգունան սպանւում է 1625ին[2]։ Աւետիս կաթուղիկոսի մասին սկզբնակէտ մասնանշել չենք կարող, բայց յայտնի վերջնակէտ առ այժմ 1622 թուականն է։ Թէեւ Մաղաքիա արքեպ. Օրմանեանը սրա մասին գրում է, թէ "պէտք է 1620 եւ 1624 տարիներու միջոցին մեռած կարծել"[3], սակայն վերջին թուականի 1624ի հիմքը յայտնի չէ։ Մնում է առ այժմ վերջնակէտ ընդունել Դարանաղցու ինքնաձեռագիր աստուածաշնչի յիշատակարանի մէջ յիշուած թուականը, որ է 1622[4]։ Այսպիսով Մեխլուի՝ Երեւանի կողմերը գալը կարող էր տեղի ունենալ 1604—1622 թուականների արանքում։

---

[1] Դաւրիժեցի, գլուխ ԽԶ. էջ 634։

[2] Դաւրիժեցի, գլուխ ԽԶ. էջ 638—639։ Յովհ- եպիսկ. Շահխաթունեանը Երեւանի խաների ժամանակագրական ցանկի մէջ Ամիրգունա խանի համար թուական չէ դնում։ "Ստորագրութիւն․․, Բ. հատ. Էջմիածին, 1842 էջ 137։

[3] Մաղաքիա արքեպ. Օրմանեան. "Ազգապատում", էջ 2340 -2342։

[4] Դարանաղցի, 612։

Ինչպէս տեսել ենք, Մեխլուբին սատող ու բանադրող հոգեւորականներից անուն անուն յիշուած են՝

1. Կիրակոս Տրապիզոնցին,
2. Սարգիս Ցարեննեցին,
3. Պօղոս Բաբեցին ու
4. Մովսէս Խստանանցին։

Սրանցից ամենավաղ մեռել են երկրորդն ու երրորդը — Ցարեննեցին ու Բաբեցին, այն էլ միեւնոյն տարին — 1620 թուականին[1], նշանակում է՝ ազդեցիկ հոգեւորականութեան՝ աղանդապաշտի դէմ հանդէս գալը 1620ից յետոյ դնել չէ կարելի։

Արեղահայածի՝ Երուսաղէմ գնալու ժամանակի սկզբնակէտը որոշելու հնարաւորութիւն է տալիս Գրիգոր եպիսկոպոսի մասին արուած յիշատակութիւնը։ Վերջինս անշուշտ Գրիգոր պարոնտէրն է, որ Երուսաղէմի պատրիարք է դարձել 1613 թուականին[2] եւ ապրել է մինչեւ 1645ը[3]։ Այսպիսով այս դէպքի սկզբնակէտն անվիճելիօրէն 1613 թուականն է, սակայն վերջնակէտ որոշելու կռուաններ չկան։ Ցամենայն դէպս, վերջնակէտը մինչեւ պարոնտէրի մահը կամ Դարանաղցու վախճանը (1643 թ.)[4] կամ սրա «Ժամանակագրութեան» վերջին թուա-

---

1 Դաւրիժեցի, ԻԱ., էջ 260. ԻԳ., 283։
2 Դարանաղցի, տաճարան, էջ ԽԳ։
3 Օրմանեան, «Ազգապատում», 2395։
4 Դարանաղցի, տաճարան, էջ ԾԷ։

կանը (1640)[1] յետաձգելը հնարաւոր չենք համարում։

Առ այժմ, մինչեւ արեղահալածի ժամանակագրութեան մասին նոր տուեալների յայտնագործումն, ընդհանուր առհմաններով կարելի է ասել, որ Մխլուի աշակերտ գալն ընկնում է ԺԶ. դարի վերջին քառորդում ու ԺԷ. ի առաջին տասնամեակներում[2]։

## Գ.

Արեղահալածութիւնը, որ ծնունդ առաւ եւ տարածուեց բուն Հայաստանում, հերձուածողական մի չափաւոր հոսանք էր։ Բոլորովին այլ պատկեր էր ներկայացնում աղանդաւորական միւս շարժումը ԺԷ. դարում, մի շարժում, որ հանդէս է գալիս հեռաւոր հայ գաղութներից մէկում — Նոր-Ջուղայի մէջ։

Նոր-Ջուղան այն ժամանակ արդէն սկսում

---

[1] Դաւրիժեցի, Առաքել, էջ ԿԶ. ու բնագիր, էջ 581։

[2] Մեսրոպ արքեպիսկոպոս Սմբատեանը Շամախու թեմի նկարագրութեանը նուիրած գրքում (էջ 187) իւր Զաքարիա սարկաւագից քաղելով մէջ է բերում այսպիսի հատուած։

"Ի նմին ժամանակի յամի Տեառն 1610 եկն ի Քանաքեռ Մխլու վարդապետն հաշեցեալ մոլորեցուցին զԱւտիայն, որ եւ հալածական եղեւ ի խանէն եւ ի կաթուղիկոսէն"։

Եթէ չենք սխալւում, Զաքարիան այս հատուածը չունի։ Արդեօք Սմբատեանի ձեռքի տակ եղել է Զաքարիայի այլ, անյայտ օրինակ, թէ հատուածը քաղուած է ուրիշ տեղից եւ յետոյ չփոթմամբ վերագրուել է Զաքարիային, չենք կարող որոշել։

էր աչքի ընկնող դեր խաղալ հանրային ու եկեղեցական կեանքում, իբրեւ հայ առեւտրական անմնանշանաւոր կենդրոններից մէկը։ Գաղութի հասարակութիւնը գլխաւորապէս կազմուած էր առեւտրականներից ու արհեստաւորներից։ Որչափով խոշոր առեւտրական կապիտալի մի հատուածը հանդէս էր գալիս, իբրեւ հայ եկեղեցու պաշտպան, իսկ միւս հատուածը հրապարակ եղնում, իբրեւ կաթոլիկութեան հետեւորդ, այնչափով էլ այս վերնախաւից նեղուող մանր քաղքենին — մանր առեւտրականներն ու արհեստաւորները — իրենց հանրային պայքարը պիտի վարէին կրօնական եկեղեցական դրօշներով՝ հակում ունենալով յարելու աղանդաւորական հոսանքներին։

Գաղափարական պայքարի այսպիսի բռնկում ա եղի է ունենում Նոր-Ջուղայում՝ կրելով խիստ արմատական բնոյթ։ Այս շարժման մասին տեղեկութիւններ հաղորդում է Խաչատուր վարդապետ Ջուղայեցին «Պատմութիւն պարսից» երկասիրութեան մէջ։ Այս մատենագիրը մօտ դար ու կէս հեռու է նկարագրած դէպքերից։ Նա ոչ ժամանակակից էր եւ ոչ էլ կարող էր ժամանակակիցներից իմացած լինել այն, ինչ որ պատմում է։ Անտարակոյս, նա ունեցել է գրական աղբիւր, որի մասին դժբախտաբար չէ յայտնում ոչինչ[1]։ Նրա տուած տեղեկութիւնները որքան էլ համառօտ են, այնուամենայնիւ

1 Ցանկալի էր, որ Նոր-Ջուղայի հայրապետները վանքի դիւանում որոնումներ կատարէին այս ուղղութեամբ։

եւ շատ մեծ արժէք ունին հայ աղանդների, մանաւանդ ձախակողմեան աղանդների պատմութեան տեսակէտից։

«Այս եղեւ, — պատմում է Ջուղայեցին, — ի 1091 թուականիս հայոց եւ յամի Տեառն մերոյ 1642, ի ժամանակի առաջնոյ Շահ-Աբէֆի արքայի»։

«Զայսու ժամանակաւ յարեաւ ոմն ժանդ եւ դժնդաբարոյ Թօմաս անուն, որ խօսէր զհայհոյութիւնս ընդդէմ ուղղափառ հաւատոյս Քրիստոսի, որ էր չարագոյն եւ դժնդակագոյն, քան զԱրիոս, զՆեստոր եւ զՍատուկեցիս[1], . . .

Խաչատուր Ջուղայեցին հակիրճ թւում է Նոր-Ջուղայի աղանդաւորի աշխարհահայեացքի հիմնական կէտերը։ Արանից տեսնում ենք, որ ինկատպէս այս աղանդը «չարագոյն» էր, այսինքն աւելի արմատական էր, քան մինչ այդ երեւան եկած հայկական աղանդները։ Մասնաւորապէս արեղահալածի հետ առադրելով պէտք է ասենք, որ Թօմասի համեմատութեամբ Մեխլուն մի կատարեալ գառն է, այն ինչ Նոր-Ջուղայի աղանդաւորն օժտուած է պողպատէ եղջիւրներով։

Ի՞նչ էր քարոզում Թօմասը։

«Նախ՝ զՔրիստոս Հօր Աստուծոյ հաւասար ոչ ընդունէր, այլ Քրիստոս սոսկ մարդ ասէր եւ երջանիկ սուրբ կոյսն Մարիամ՝ մարդածին։

[1] Խաչատուր Առաքելի Ջուղայեցւոյ «Պատմութիւն պարսից», աշխատութեամբ Յարդէն վարդապետի Աբովեան. Վաղարշապատ, 1905, էջ 115։

Երկրորդ՝ համանգամայն սատուկեցւոց զյարութիւն եւ զդատաստան ոչ ընդունէր։

Երրորդ՝ զխաչն Քրիստոսի, զպատարագն հաշտարար եւ զհաղորդութիւնն սուրբ հայհոյէր իբրեւ զմահմետական։

Չորրորդ՝ զեդեալ կանոնս առաքելական եւ զաստուածեղէն սահմանս եւ եօթն խորհուրդս սրբոյ եկեղեցւոյ անարգէր։

Հինգերորդ՝ զառաջնորդս, զվարդապետս, զքահանայս եւ զպաշտօնեայս սրբոյ եկեղեցւոյ պախարակեալ արհամարհէր եւ խաբեբայս զնոսա կոչէր։

Եւ այսպէս այլս այս դժնդակ եւ անառողջն կամէր նոր իմն չարագոյն հերձուած մուծանել յեկեղեցին Քրիստոսի[1]»։

Հաւանական է, որ իշխող եկեղեցին չէր կարող հանդուրժել այս «Նոր իմն չարագոյն հերձուածը»։ «Նոր-Ջուղայի այն ժամանակուայ առաջնորդը, Խաչատուր կեսարացին հրամայում է փակել բոլոր եկեղեցիները, գումարում է «ընդհանուր մեծ», ուր հրաւիրում է եպիսկոպոսներին, վարդապետներին, քահանաներին ու ժողովրդին՝ Թոմասի դէմ միջոցներ ձեռք առնելու համար։

«Ցետ բազում անգամ խրատելոյն զնա, եւ նորա ոչ գալոյն յուղղութիւն, ի բաց եհան զխայթեալ եւ զապականեալ անդամն ի յողջ անդամոյն Քրիստոսի, զի մի՛ փոքր մի եւս մնա-

[1] Ջուղայեցի. 115։

ցեալ ի յայլ յոգի անդամն փոխադրեսցի զայն ապականութիւն»[1]։

Ջուղայեցին դժբախտաբար բաւականանում է այս ընդհանուր բառերով եւ չէ յայտնում, թէ ինչ միջոցներ գործադրուեցին աղանդաւորի նկատմամբ. արդեօք բաւականացա՞ն սոսկ բանադրանքով կամ եկեղեցուց արտաքսելով, գիտեցի՞ն մարմնական պատիժներ կիրառելու միջոցին էլ, արդեօք հայկական միջավայրո՞ւմ խնդիրն սպառուեց, թէ այս անգամ էլ կողմերից մէկին օգնութեան հասան շահն ու խանն իրենց փարրաշներով։ Ամենայն դէպս, այն հանգամանքը, որ աղանդաւորի դէմ հանդէս է եկել ոչ թէ միայն առաջնորդը անձնական հեղինակութեամբ, այլ «մեծ սինհոդոսն», այսինքն հասարակական մի հաւաքումը, ցոյց է տալիս, որ Թոմասի առաջ բերած գաղափարական ցնցումն ու հոգիների ալեկոծութիւնը խիստ մեծ է եղել։

## Է.

Խաչատուր Ջուղայեցին չէ հաղորդում, թէ ինչ հասարակական շերտից էր գալիս աղանդաւորը։ Նրա մասին ասածներից կարելի է եզրակացնել, թէ նա աշխարհական էր. հակառակ դէպքում կը յիշուէր նրա հոգեւորական աստիճանը։ Իսկ թէ առեւտրական էր նա, արհեստաւոր, կամ գիւղացի, թէ վարպետ կամ

[1] Ջուղայեցի, 116։

վարպետացու, ունէր արդեօք հետեւորդներ թէ ոչ, — այս չէ կարելի իմանալ "Պարսից պատմութիւնից"։

Բարեբախտաբար այս մասին մեզ տեղեկութիւններ տալիս է մի այլ պատմագիր, որ ժամանակով աւելի մօտ է Թօմասին։ Այս ժամանակակից մատենագիրը կրկին Զաքարիա սարկաւագն է։

Զաքարիան իւր "Պատմագրութեան" Բ. հատորում պատմելով Յակոբ կաթուղիկոս Ջուղայեցու դէմ պայքարող հոգեւորականներից մէկի-Երեւանցի Ոսկիփիրոս եպիսկոպոսի մասին, որ յայտնի է նաեւ Ոսկիփիրոս Վարկուտ անունով, յիշատակում է, թէ ինչպէս կաթուղիկոսը դատաստան է հրաւիրում նշանաւոր հոգեւորականներից՝ Վարկոտի ըմբոստ արարքները քննելու համար։ Ոսկիփիրոսի հարցաքննութեանը ներկայ է լինում Նոր-Ջուղայեցի մի հայ Սեւ Պետրոս անունով, որը Վարկոտի մասին խօսելով հետաքրքրական տեղեկութիւններ է տալիս Նոր-Ջուղայի աղանդաւորի մասին էլ։

Յորժամ եկն Փիլիպպոս կաթուղիկոսն յԱսպահան, — պատմում է Սեւ Պետրոսը, — եւ սա (Վարկուտը. Թ. Ա.) սարկաւագ էր ընդ նմա։ Յաւուր միում երթայր գերեզմանն Թումիկ ի քաղաքն, եւ սա զկնի նորա բացագոյն երթայր եւ հայհոյէր։ Եւ ես զկնի նորա գնայի եւ ասացի սմա.

— Ընդ ո՞ւմ խօսիս, սարկաւագ։

Եւ սա ասէ.

— Ո՞վ է սա, որ գնայ առաջի մեր։
Ասացի.
— Ուսթա Թումիկն է։
Ասէ.
— Սա՞ է Հերձուածող Թումիկն։
Ասացի։
— Այո։
Եւ նա ասէ.
— Ահա տեսանեմ, զի հրեշտակ բարձր ի վեր քան զգլուխն կայ եւ երկու դեւ ի վերայ երկուց ուսոցն նստեալ են, եւ դա խօսի ընդ նոսա„[1]։

Ըստ Առաքել Դաւրիժեցու՝ Փիլիպպոս կաթողիկոս Աղբակեցին Աստապատն է գնում Հայոց Ռ·ՁԶ = 1637 թուականին եւ այնտեղից Վաղարշապատ է վերադառնում Ռ·ՁԷ = 1638ին, սեպտեմբերի 20ին[2]։ Այսպիսով ուրեմն Սեւ Պետրոսի պատմած դէպքը տեղի է ունեցել 1637 կամ 1638 թուերին։ Խաչատուր Ջուղայեցու ասելով Կեսարացի առաջնորդը Հերձուածող Թոմասի դէմ միջոցներ է ձեռք առել 1642 թուականից։ Տեղի նոյնութիւնը (Նոր-Ջուղա), անուան նոյնութիւնը (Թոմաս, Թումիկ), Հերձուածող լինելու հանգամանքն ու ժամանակի մօտութիւնը ոչ մի կասկած չեն թողնում, որ Զաքարիա սարկաւագի Հերձուածող Թումիկը Խաչատուր Ջուղայեցու յիշած „ժանտ եւ գժտարարոյ„ Թոմասն է։

---

1 Զաքարիա. Բ. Հատոր. Վաղարշապատ. 1870. էջ 69։
2 Դաւրիժեցի. գլ. ԽԵ. էջ 318 եւ 321։

*Զաքարիայի հատուածը ցոյց է տալիս նաև, ու Թումիկի քարոզչութիւնն սկսուել է 1642 թուականից շատ առաջ, այնպէս որ աղանդաւորն 1637—1638ին արդէն հռչակուած էր, և ուղղափառների ատելութիւնն այնքան բորբոքուած, որ փողոցներում նրան հետապնդում էին հայհոյանքներով և պատմութիւններ յերիւրում նրա ուսին նստած դևերի մասին։*

*Յիշեալ հատուածը, բացի սրանից, խիստ կարևոր է մանաւանդ մի այլ տեսակէտից։ Այս հատուածը մեզ հնարաւորութիւն է տալիս որոշելու այն հանրային խաւը, որն այս աղանդի երկնողն էր։ Այս հանրային շերտն արհեստաւորութիւնն էր, մանաւորապէս դերձակների «համարուեստը»[1], համքարութիւնը, որի շարքերում Թումիկն «ուստա» էր, վարպետ։ Արևելահայ գրականագէտ Դաւիթ Անանունը «Ռուսահայերի հասարակական զարգացումը ԺԹ. դարում» աշխատութեան առաջին հատորի մէջ[2] հիմնուելով Հ. Ղուկասեանի տուեալների վրայ՝ շեշտել է այն կապը, որ ԺԹ. դարում եղել է մի կողմից՝ հայ բողոքականութեան ու միւս կողմից՝ արհեստաւորութեան, մանաւորապէս վարպետների ու վարպետացուների շարժման*

---

[1] «Համարուեստ» բառը «համքարութիւն» բառի իմաստով գործածելը, թէև հազուադէպ, տակաւին պատահում է։ Համմ. «Դիւան հայոց պատմութեան», գիրք Ժ. — Մանր մատեաններ. Թիֆլիս. 1912. էջ 411։

[2] Դ. Անանուն, «Ռուսահայերի հասարակական զարգացումը ԺԹ. դարում», Ա. հատոր, Բաքու 1916. էջ 240—241։

միջեւ Հայ հասարակական մտքի պատմութեան մէջ աղանդի ու արհեստի նման կապ առաջին անգամ տեսնում ենք ժէ. դարում յանձին հերձուածող դերձակ Թումիկի։

Զաքարիան չէ յայտնում, թէ Կարկառի դատաստանը որ թուականին կամ ժէ. դարի որ տասնամեակում է լինում։ Մեզ անհրաժեշտ է այս դէպքի մօտաւոր ժամանակը որոշելը։ Նրան կռուան է ծառայում այն հանգամանքը, որ յիշեալ դատին ներկայ են լինում, ի միջի այլոց, նաեւ Ագուլեցի Պետրոս Գ. Խանձկեցի կաթուղիկոսն ու Գողթան գաւառի առաջնորդ Խաչատուր վարդապետը[1]։ Խանձկեցին գահ է բարձրանում 1653ին եւ մեռնում 1675ին[2]։ Իսկ Խաչատուր վարդապետը, ինչպէս ցոյց են տալիս Զաքարիա Ագուլեցու "Օրագրութեան„ կամ, աւելի ճիշդը, "Դաւթարի„ պատառիկները, մեռել է հայոց 1113=1664 թուի Յուլիսի 24ին[3]։ Նշանակում է Կարկառի դատը կարող էր տեղի ունենալ 1653—1664 թուականների արանքում։

Զաքարիան յիշեալ Սեւ Պետրոսի մասին ասում է, թէ "ունէր հերձուած ինչ„։ Արդեօք ի՞նչ հերձուած էր այս։ Եթէ Սեւ Պետրոսը կա-

---

1 Զաքարիա. Բ. 68—69։

2 Բարխուդարեան, "Պատմութիւն Աղուանից„, Բ. 66—68։

3 Մեսրոպ արքեպիսկոպոս Սմբատեան, "Նկարագիր Սուրբ Կարապետի վանուց Երնջակայ„, Տփխիս, 1904, էջ 209։

թուլիկ լինէր, ապա մատենագիրն այսպէս անորոշ չէր գրեր, այլ պարզապէս կ՚ասէր, թէ կաթոլիկ էր. որովհետեւ կաթոլիկութիւնն այն դարում հանրայայտնի երեւոյթ էր։ Սեւ պետրոսը հերձուածող Թումիկին ժամանակակից էր։ Սա պետրոսը Նոր-Ջուղայեցի էր, այն գաղութից, որտեղ քարոզել էր Թումիկն իւր հերձուածը։ Սեւ պետրոսն «ունէր հերձուած ինչ», որի մասին անորոշ խօսել է Զաքարիան։ Այս տուեալների վրայ հիմնուելով չէ՞ կարելի արդեօք ենթադրել, որ Սեւ պետրոսը հաւանօրէն «ժամու Թումասի հետեւորդներից մէկն էր։ Դրական պատասխանը կ՚ապացուցէր, որ Նոր-Ջուղայի աղանդաւորն ունեցել է հետեւորդներ, որոնք հաւատարիմ էին մնացել նրա ուսմունքին 1642ից, այն է նրա դէմ միջոցներ ձեռք առնելու թուականից մէկ կամ երկու տասնամեակ յետոյ էլ, 1653ից մինչեւ 1664ը։ Հետեւորդների գոյութեան փաստն աւելի լաւ է բացատրում, թէ ինչու Սեպաստացի առաջնորդն անպայման անհրաժեշտ էր համարել գումարել «սինհոդոս մեծ»։

## Ը.

Այժմ մեզ մնում է թռուցիկ շօշափել մի խնդիր էլ, թէ ինչ առնչութիւն ունի դերձակ Թումիկի աղանդը մի կողմից բուն հայկական հերձուածների — հին ու նոր թոնդրակեցոց հետ ու միւս կողմից՝ եւրոպական բողոքականութեան հետ։

Նախապէս հարկաւոր է մի վերապահութիւն։ Մինչդեռ «Նոր» Թոնդրակեցոց դաւանանքի մասին դիտողութիւններ տալու համար կայ այնպիսի մի հաստատուն կռուան, որպիսին նրանց հաւատարմամբ է, որ կրում է «Բանալի ճշմարտութեան» անունը, դժբախտաբար հին Թոնդրակեցոց ու Թումիկի աշխարհահայեացքի ու դաւանանքի մասին սրանց ձեռքով գրուած անմիջական աղբիւրներ չկան, ուստի եւ ուսումնասիրողները հարկադրուած են հիմնուելու աղանդին հակառակորդ եղած մատենագիրների աւանդի վրայ։ Սակայն այս հիմունքը ոչ թէ ապացուցում է բացարձակ վաւերութիւն յիշեալ աղբիւրների նկատմամբ, այլ միայն պայմանական օգտագործումն այն աղբիւրների, մի օգտագործում, որի ժամանակ միշտ խելքի պիտի համարել ուսումնասիրողի շշունքը. թէ՛ եթէ ճիշտ է աղբիւրի հաղորդածն, ապա սրանից պէտք է բղխեցնել այս կամ այն։

Խաչատուր Ջուղայեցին Թումիկի քարոզութեան առաջին կէտի մասին գրում է, թէ Քրիստոսին մարդ էր անուանում եւ Մարիամին մարդածին։ Արիստակէս Լաստիվերացին հին Թոնդրակեցոց վերաբերմամբ այս չէ վկայում, իսկ Գրիգոր Նարեկացին հաստատում է, որ իրոք Թոնդրակեցիք Յիսուսին մարդ էին համարում, որից հետեւում է, թէ Մարիամին էլ մարդածին էին հաշւում։ Նարեկացին անշուշտ այս է ուզում ասել, երբ չեշտում է հին Թոնդրակեցոց «մարդապաշտ ուրացութիւնն», որ զարշելի է եւ անի-

ծեալ քան զկռապաշտութիւն[1]։ Նոր թոնդրակեցոց հաւատարմաբար «Բանալի Ճշմարտութեանը» շատ որոշակի Յիսուսին անուանում է «Նոր Ադամ», «Մարդ Յիսուս», «Նոր մարդն Յիսուս», «Նոր արարած եւ ոչ արարիչ», իսկ Մարիամին՝ սոսկ «կին»[2]։

Զուղայեցու երրորդ ու չորրորդ կէտերից իմանում ենք, որ Թուլմիկը մերժում էր խաչը, պատարագը, հաղորդութիւնն ու ընդհանրապէս եօթը խորհուրդներն, այլ եւ եկեղեցական կանոնները։ Հին թոնդրակեցոց մասին Լաստիվերտցին վկայում է, թէ նրանք «զփրկութեան մերոյ զնշանն եւ զտէրունական յաղթութեան զզէնն... խորտակէին անամօթաբար»։ Յայտնի է Բաղմաղբիւրի խաչի պատմութիւնը, որը թոնդրակեցիք «մրճով հարեալ... մանրեալ յերկիր ընկեցին»[3]։ Նոյնը հաստատում է նաեւ Նարեկացին՝ ասելով, թէ նրանք չէին ընդունում «զնշանն երկրպագեալ, զոր Աստուածն մարդացեալ յուսն իւր բարձեալ կրեաց»[4]։ Նոր թոնդրակեցիք նոյնպէս բացասում են «զպատկերս անձեռ, զարձան եւ ոսկի ի ձեւ պատկերի...

---

1 «Գիրք Թղթոց», Թիֆլիս, 1901. «Թուղթ Գրիգորի Նարեկացւոյ, զոր գրեաց ի Հոյակապ եւ ականաւոր վանքն Կճաւայ...», էջ 499։

2 "The Key of Truth", Fred. Conybeare, Oxford, 1898. «Բանալի Ճշմարտութեան», էջ 11, 12, 29, 45 ու 51—52։

3 «Արիստ. Լաստիվերցւոյ Պատմութիւն», Թիֆլիս, 1912, էջ 157։

4 «Գիրք Թղթոց», էջ 499—500։

առնել եւ երկիրպագանել»[1]։ Ինչ վերաբերում է մնացածին, այս Լուսաւորչեցին ասում է, որ «բնաւ ոչ ընդունէին ոչ զմկրտութիւն եւ ոչ զմեծ եւ զաստուածեղէն խորհուրդ պատարագին... եւ ոչ զկարգաւորութիւն պահոց»[2]։ Իսկ «Նարեկացին աւելի մանրամասն հաստատում է, թէ ժխտում էին ձեռնադրութիւնը, հաղորդութիւնը, մկրտութիւնը, կիրակին, ծնրադրութիւնը, պասկը ու մատաղը[3]։ «Նարեկացին աւելի շատ մեղադրանք է բարդում, քան Լուսաւորչեցին։ Սակայն երկուսն էլ համաձայն են, որ հին թոնդրակեցիք ժխտում էին մկրտութիւնն ու հաղորդութիւնը։ «Նոյնը չէ կարելի ասել «նոր թոնդրակեցոց մասին։ Սրանք խորհուրդներից յատկապէս ընդունում են մկրտութիւնն ու հաղորդութիւնը եւ ժխտում դրոշմը, կարգ քահանայութեանը, վերջին օծումն ու պսակը։ «Չորք են, որ զմարդս փրկեն, — գրում է «Բանալին», — նախ ապաշխարութիւն, երկրորդ՝ ուղիղ դաւանութիւն, երրորդ՝ սուրբ մկրտութիւն եւ չորրորդ՝ սուրբ պատուական մարմին եւ արիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի... Դրոշմ, կարգ քահանայութեան, վերջին օծում եւ պսակն ոչ են փրկութիւն հոգւոց մերոց, այլ են անհարկք եւ ոչ հարկաւորք»[4]։ Այսպիսով համեմատելով Թուլիկի աղանդը հին ու նոր

---

1 «Բանալի ճշմարտութեան», էջ 19։
2 Լուսաւորչեցի, 162։
3 «Գիրք թղթոց», 499—500։
4 «Բանալի ճշմարտութեան», էջ 59։

թոնդրակեցոց հետ՝ տեսնում ենք, որ այն աւելի հեռու է Նոր թոնդրակեցիներից եւ մօտ է հիներին, սակայն վերջիններից աւելի արմատական է, որովհետեւ ժխտում է բոլոր խորհուրդներն ու եկեղեցական հին կանոնները։

Հինգերորդ կէտում ասուած է, թէ Նորջուղայի աղանդաւորը պախարակում, արհամարհում եւ խաբեբայ էր կոչում բոլոր եկեղեցականներին։ Լաստիվերցին յիշատակում է, թէ հին թոնդրակեցիք «զեկեղեցի եւ զեկեղեցւոյ կարգաւորութիւն բնաւ ոչ ընդունէին»։ Նարեկացին հաղորդելով, որ նրանք մերժում են ձեռնադրութիւնը, կրկնում եւ շեշտում է հին թոնդրակեցոց «Ինքնաձեռն քամահանաց քահանայութիւնն»։ Դրանով ուզում է ասել, թէ նուիրապետական ձեռնադրութիւն չկար, այլ իրենք իրենց էին «ձեռնադրում», աղանդաւորների սպասաւորութեան գործին կոչւում առանց բարդ արարողութիւնների ու դժուարութիւնների, լոկ ներքին մղումից դրդուած։ Աղանդի ռամկավարութեան նշանացոյց էր անշուշտ այս երեւոյթը։ Նոր թոնդրակեցիք խիստ լեզուով յարձակւում են եպիսկոպոսների ու կաթողիկոսների վրայ. «զի նոքա հպարտ եւ բարձրամիտ եւ մանաւանդ փառասէրք իշխանութեան սնոտի մերոյ Յիսուսի Քրիստոսի, նա եւս են անօրինողք սուտ օրինաց եւ եւս են ապահ եւ սուտ իրաց հանճարողք»[1]։ Նոր թոնդրակեցիք ունին իրենց

1 «Բանալի ճշմարտութեան», էջ 16։

նուիրապետութիւնը, սակայն վերջինս ծայրաստիճան պարզ ու ռամկավարական բնոյթ ունի։ Աւելին այս տեսակէտից հին ու նոր թոնդրակեցիք եւ Թուլմիկն ընդհանրապէս նման ու մօտ են իրար։

Ամենից հետաքրքրականը Յուղայեցու յիշած երկրորդ կէտն է, ըստ որի Թուլմիկը «Համահանդոյն Առաքելոց դպրութիւն եւ զգատասան ոչ ընդունէր»։ Դժբախտաբար ոչ Լաստիվերցին ու ոչ էլ Նարեկացին որեւէ առթիւ չեն շօշափում այս խնդիրը, որ իմանանք սորա, թէ ինչ էին մտածում այս մասին հին թոնդրակեցիք։ Լուծումը կարող է հիմք ծառայել ընդունելու, որ նրանք չէին ժխտում ոչ մէկն ու ոչ էլ միւսը, հակառակ դէպքում որոշակի կը շեշտուէին այս ծանր մեղադրական կէտերը։ Ինչ վերաբերում է նոր թոնդրակեցիներին, ապա պէտք է ասենք, որ սրանք դաւանում էին, թէ «է մի միայն դատաստան եւ ոչ երկու», թէ «վասն կատարածի աշխարհի ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք յերկինս եւ ոչ որդի, բայց միայն հայր», թէ Յիսուս «հօրն իւրոյ հրամանաւ գալոց է դատել զկենդանիս եւ զմեռեալս»[1]։ Թուլմիկը ժխտում էր յարութիւնն ու դատաստանը։ Սրանով Նոր-Ջուղայի աղանդաւորը հանդէս է գալիս իբրեւ քարոզիչ մի հերձուածի, որ ամենից արմատականն ու ձախակողմեանն է հայ աղանդների պատմութեան մէջ։ Իշխող եկեղեցու ու իշխող եկեղեցիների հա-

[1] «Բանալի Ճշմարտութեան», էջ 29, 61, 62։

մար այս գերձակի սանդն աւելի վտանգաւոր էր, քան „յախուռն Մենելաւի Նիզակը։

Կարո՞ղ էր արդեօք Թումիկի աղանդը բողոքականութեան անդրանիկ արձագանգներից մէկը լինել Հայ իրականութեան մէջ։

Սրան երկու առարկութիւն կայ։ Տեսանք, որ Նոր-Ջուղայի աղանդապետի ուսմունքն աւելի ծայրահեղ ու արմատական բնոյթ ունի ընդհանրապէս, քան հին թոնդրակեցոց ու մանաւանդ նոր թոնդրակեցոց հերձուածը։ Բողոքականութիւնը դաւանանքով համեմատաբար աւելի մօտ լինելով նոր թոնդրակեցիներին՝ շատ ու շատ հեռու է Թումիկի արմատականութիւնից։ Երկրորդ առարկութիւնն այն է, որ բողոքականութիւնը միայն 19րդ դարի երրորդ ու չորրորդ տասնամեակներում է հաստատուել Տաճկաստանում ու Ռուսաստանում եւ այս երկիրներից սփռել իր ազդեցութիւնը դէպի հարեւան արեւելեան երկիրները։ Ըստ Աբրահամ Ջամինեանի՝ բողոքական "Պորտի (ընկերութիւն է, Թ. Ա.) քարոզիչներն առաջին անգամ 1827 թուին Պոլիս հասան եւ Բերա թաղում հաստատուեցան„[1]։ Իսկ ըստ Օրմանեանի՝ "Առաջին բողոքական քարոզիչը Կոստանդնուպոլիս հասած էր կաթոլիկ հասարակութեան կազմուելէն առաջ (1831 թ.)„[2]։ Ինչ վերաբերում է Ռուսաս-

[1] Աբրահամ Ջամինեան, "Հայոց եկեղեցու պատմութիւն„, Բ. մաս, Նոր Նախիջեւան 1909. էջ 214—217։

[2] Մաղաքիա արքեպ. Օրմանեան, "Հայոց եկեղեցին„, Կոստանդնուպոլիս 1911. էջ 117։

տանին ու Կովկասին, ապա հանրայայտնի իրողութիւն է, որ բողոքականներն այս երկիրներում հաստատուել են ԺԹ. դարի երրորդ տասնամեակից։ Ուստի անհնաւին հաւանական չէ, որ ԺԷ. դարի առաջին կէսում արեւելքի հեռաւոր հայ գաղութներից մէկի մէջ երեւան եկած խիստ արմատական աղանդի արեւմտեան Եւրոպայի բողոքական հոսանքներից որեւէ մէկի ընձիւղը լինի։

Շատ հետաքրքրական կը լինէր ԺԶ. ու ԺԷ. դարերում երեւան եկած հայ աղանդները համեմատել Եւրոպայի, մանաւորապէս անգլիական հերձուածների հետ։ Այս զուգադրութիւնը կը պարզէր, որ Մեխլուի շարժումը որոշ չափով նման է, օրինակ, Ջոն Ուիկլեֆի (ԺԴ. դար) շարժմանը, իսկ Թումիկի քարոզը շատ ընդհանուր գծեր ունի քուակերների (quakers) վարդապետութեան հետ։ (Ամենանշանաւոր քուակերներից Ջորջ Ֆոկսն ու Ջէյմս Նէյլորը նոյն իսկ ժամանակակից են հին Թումիկին միայն այն տարբերութեամբ, որ Թումիկն աւելի առաջ է սկսել իր քարոզչութիւնը, քան անգլիական հռչակաւոր աղանդի այս գործիչները, որոնցից Ֆոկսը ժողովրդականութիւն է ստացել 1649 թուականից, իսկ Նէյլորը՝ 1652 ից)։

Սակայն հնարաւորութիւն չունենալով այս էջերում նաեւ յիշեալ համեմատութեամբ զբաղուելու՝ վերջացնում ենք մեր գրութիւնը, որի նպատակն էր մի քանի հաստատուններ մատնանշելով ու ընդգծելով ցոյց տալ, թէ հայ

աղանդաւորական շարժման ուշագրաւ ներկայացուցիչներ են Մեխլուն ու Թումիկը, որոնք իրենց արժանի տեղը պիտի ունենան այսուհետեւ հայ հանրային հոսանքների ու աշխարհայեացքների պատմութեան մէջ Սարգիս «Մայրագոմեցու», Սմբատ Զարեհաւանցու, Յակոբ ու Մուշեղ Թոնդրակեցիների, Դաւիթ Ծարեցու եւ Յովհաննէս Վահագնունու կողքին։

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

---

## ԹԱՆԱՍԷՐԻ ՕՐԱԳՐԻՑ

### Ա.

### ՄԵՀՐՈՒԺԱՆ ԱՐԾՐՈՒՆՈՒ ՁԱՅՐՈՅԹԸ

*Փաւստոս Բիւզանդը իւր «Պատմութեան» Ե. դպր. ԽԴ. գլխում պատմելով չորրորդ դարի վերջին տասնամեակների հայ-պարսկական պատերազմների ու Մամիկոնեան–Արծրունի տոհմերի հակամարտութեան մասին՝ նկարագրում է մի միջադէպ այսպէս.*

*«Ապա դրդեաց Մերուժանն այս զԹագաւորն Պարսից եւ առեալ զօրս բազումս ի նմանէ եւ եկն եհաս յերկիրս Հայոց . . . : Գայր, հասանէր ամենայն բազմութեամբն զօրացն Պարսից յերկիրն Հայոց եւ Թողոյր զբանակ զօրացն Պարսից ի գաւառին Կորճէից եւ ինքն իւրով անխհականաւն գնդաւն հրամանին մեկնէր, դառնայր յԱրեւաց գնդէն . . . : Եւ ինքն զիւր գունդն առեալ խաղայր, գայր հասանէր յերկիրն Կոգ գաւառի: Եւ ինքն գնեցի առեալ՝ առնէր*

ռես ի բանակն Մանուէլի: Եւ զայլն հառանէին յբանակքն եւ զինէին զՄանուէլ, զի էր բանակ նոցա ի Բագրաւանդ գաւառի ի Բագաւան աւանի, որ է մօտ յաւերակն Զարեհաւանից քաղաքի . . .: Եւ չու արարեալ (Մեհրուժանայ) կատարել զզօրսն, յոր փութացեալ կամէր հասանել, եւ էին ի վայրան, ընդ որ գալ էր գնդին ընդ ճանապարհն, լերինք ինչ, որում ի բնակչացն Եղջերք կոչեն: Եւ մինչդեռ գայր Մեհրուժանն ի ճանապարհի գնդաւն իւրով, դիպեցան նմա ուղեւորք, յորս հարցանէր Մերուժանն եւ ասէր·

— «Ճանապարհս ի Բագրաւանդ ընդ ո՞ր երթայ»:

Եւ ուղեւորացն տուեալ պատասխանի՝ ասացին·

— «Ճանապարհ ընդ Եղջերս է:»

Եւ մեծապէս խարեաց Մեհրուժանն ընդ միտս իւր, արամեցաւ ընդ բանն, սակայն տայր հրաման չարաչար քարշել զուղեւորսն եւ ծեծել:»[1]

Կող գաւառում կամ Կողոփառում ինչ որ լեռներ են եղել Եղջերք անունով: Մեհրուժանը հարցրել է Կողոփից Բագրեւանդ տանող ճանապարհը: Ուղեւորները պատասխանել են, թէ ճանապարհն անցնում է Եղջերք լեռներով: Պատասխանն անմեղ պա-

[1] Փաւստ. Բիւզ. Պատմ. Թիֆլիս 1913, էջ 375—377:

տասխան է, բայց Մերուժանը սաստիկ վրդովուելով նրանց պատասխանից՝ չարաչար քաշքշել է տալիս ուղեւորներին եւ ծեծում։

Ինչո՞ւ է զայրանում Արծրունի իշխանը։

Մինչեւ այժմ դեռ ոչ ոք չէ մատնանշել, թէ յիշեալ հատուածում բնագիրը պակաս տողեր կամ բառեր ունի. բնագիրը լրիւ է։ Սակայն այս դէպքում մնում է անհասկանալի, թէ ինչո՞ւ է Մեհրուժանը կատաղում, իրեն ասում՝ լսելով, թէ «ճանապարհ ընդ Եղջերս է»։

Որքան մեզ յայտնի է, այս հատուածը մի զաւեշտական բացատրութիւն ունի, որ բերնէ բերան պատմում է բանասէրների շրջանում։ Մենք լսել ենք մեր ուսուցիչ ու վաստակաւոր բանասէր Սուքիան Կանայեանից։ Ըստ այս բացատրութեան Մեհրուժանը բարկանում է նրա համար, որ այդ պատասխանով ուղեւորները ուզել են հասկացնել, թէ Արծրունեաց տիկինն անհաւատարիմ է, եւ Մեհրուժանն էլ՝ եղջերաւոր ամուսին։ Հին յոյների, արդի եւրոպացոց, այլ եւ ռուսների մէջ սովորական է եղջերաւոր անուանել այն տղամարդին, որի «կնոջ աչքը», ինչպէս ժողովուրդն է ասում, «դուրսն է»։

Այս բացատրութեանը քիչից շատից հաւանականութեան կերպարանք տալու հա-

մար պէտք էր նախ որ եւ է ակնարկ գտնել Մեհրաւանի ընտանեկան դժուարութիւններին մասին եւ ապա գտնէ մէկ–երկու օրինակ բերել՝ ապացուցելու համար, թէ հայերի մէջ էլ անհաւատարիմ կին ունեցող ամուսնուն «եղջերաւոր» են անուանել կամ անուանում, ինչպէս հին յոյները, արդի եւրոպացոց կամ ռուսների մէջ։

Նման հիմքեր չեն բերուած, ուստի մենք այս բացատրութիւնը մերժելով՝ առաջարկում ենք մի նորը։ Եւ մեզ թւում է, առեղծուածի բանալին տալիս է մի այլ հայ պատմագիր, այն է՝ Ղեւոնդը։

Սա իր «Պատմութեան» Բ. գլխում պատմելով արաբացոց անդրանիկ արշաւանքներից մէկի — 638 թուականի արշաւանքի մասին՝ գրում է.

«Եւ գունդ մի հատեալ (Իսմայէլացւոցն) ասպատակէին ընդ գաւառն Արտազի ի վերայ զօրավարին Յունաց, որում անուն էր Պռոկոպ, որ էր բանակեալ ի գաւառին Կողովտի ի սահմանս Բալուձորոյ եւ Մարդուցայից։ Որում իրազեկ եղեալ իշխանն Թէոդորոս, որ էր յազգէն Ռշտունեաց . . . մարմաքեալ ընդ կորուստ աշխարհիս Հայոց եւ ընդ ծուլութիւն զօրավարին՝ ոչ ունէր ժամ . . . ։ Եւ սպրամեալ Թէոդորոս . . . նոյն ժամայն հրամայէր զօրացն, որ ընդ իւրով իշխանութեամբ էին. «Վառեցարուք, ասէ, եւ ելէք

ընդդէմ Իսմայէլին»։ Եւ նորա հեծեալ յերի-
վարս իւրեանց՝ դարանամուտ եղեն ի սա-
րակն, որում Եղբարան կոչէին, եւ կալեալ
պատուաջս կրճիցն՝ զրադումն ի նոցանէ սա-
տակէին եւ առեալ զկապուտ անկելոցն՝ հա-
տուածեալ ի զօրավարէն՝ գնային ի գաւառն
Գառնի։»[1]

Մեզ թւում է, թէ չորրորդ ու եօթե-
րորդ դարերում կատարուած անցքերի աշ-
խարհագրական միջավայրը նոյնն է։ Սա-
նուէլը բանակել էր Բաղրեւանդում, արեւ-
մուտքում, Մեհրուժանը նրա վրայ գնում
էր Կոգովտից, արեւելքից։ «Եղջերք» լեռը
գտնվում էր Կոգովտայ Բաղրեւանդ տանող
ճանապարհի վրայ։ Երկրորդ դէպքում
Գողկայր բանակել էր Կոգովտում, արեւ-
մուտքում, արաբներն եկել, անցել էին Ար-
տազից, արեւելքից եւ գնում էին արեւ-
մուտք, դէպի Կոգովտի այն մասը, որտեղ
գտնւում էին հայ-բիւզանդական զօրքերը։
Թէոդորոս Ռշտունին Կոգովտում — երեւր
դէպի արեւելք — դարանամուտ է լինում
մի լեռան մօտ, որ «Եղբարք» է կոչւում։
Փաւստոսը բարձունքի մասին ասում է
«լերինք ինչ», Ղեւոնդը՝ «սարակ». երկուսն
էլ ոչ շատ նշանաւոր լեռ նկատի ունեն։
Կարծում ենք, որ միեւնոյն բարձունքն է
հէնց, «որում ի բնակչացն Եղջերք կոչէին»

1 "Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց. Բ. տպագրութիւն, Ս. Պետերբուրգ 1887. էջ 7–8.

(Փաւստոս) և «որում Եղբարան կոչէին» (Ղևոնդ)։ Լեռան անունը ճիշտ պահպանուել է Ղևոնդի հատուածում, այն ինչ Փաւստոսի բնագիրն աղճատուած է և պէտք է ուղղագրել այսպէս.

«Եւ էին ի վայրին, ընդ որ գայ էր գնդին ընդ ճանապարհն, լերինք ինչ, որում ի բնակչացն ԵՂ քա ԲԺ (փոխանակ Ե Ղ ջև ԲԺ) կոչէին։ Եւ մինչդեռ գային Մերուժանն ի ճանապարհի գնդաւն իւրով, դիպեցան նմա ուղևորք, յորս հարցանէր Մերուժանն և ասէր. «Ճանապարհ ընդ ո՞ր երթայ»։ Եւ ուղևորացն ասեալ պատասխանի՝ ասացին. ճանապարհ ընդ ԵՂ քա ԲԱ է (փոխանակ ԵՂ ջև ԲԱ)»։

Ուղևորները միամտաբար խօսել էին Մեհրուժանի ամենացաւոտ տեղը։ Արծրունի իշխանի կարծիքով անցորդներն ուզել էին ասել, թէ նրա ճանապարհը, նրա ուղիղ ճանապարհը ոչ թէ պարսիկների հետ լինելն է, այլ իւրայինների, հայրենակիցների, հայ եղբայրների հետ լինելն է։

Տարիներ շարունակ Արշակունի-Մամիկոնեան գերիշխանութեան դէմ կատաղի կռիւ մղած Արծրունին, որ պարսկական դիմաւորման (orientation) պարագլուխ էր, լսում է մի պատասխան, որ նրան թւում է քաղաքական խրատ, յանդիմանութիւն, նախատինք.

— Ճանապարհ ընդ Եղբա՛ր է։

Այժմ արդէն յիշվին հասկանալի է, թէ ինչու «Մեծապէս խորհեաց Մերուժանն ընդ միտս իւր, տրտմեցաւ ընդ բանսն . . . տայր հրաման չարաչար քարշել զուղեւորսն եւ ծեծել» ։

## Բ.

### ՆՈՐԻՑ ԿՈՐԻՒՆԸ ՎՐԱՑՏԱՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՉԷ ԵՂԵԼ

Որ Կորիւն Թարգմանիչը Վրաստանի եպիսկոպոս է եղել, այս կարծիքը մեր գրականութեան մէջ վաղուց ի վեր ընդհանուր տեղի է եւ հիմնուած է «Պատմութիւն վարուց եւ մահուան սրբոյն Մեսրոպայ վարդապետի մերոյ Թարգմանչի» մատեանի մէկ տեղի վրայ ։ Այստեղ հեղինակը պատմելով վրաց տառերի գիւտը Մաշթոցի ձեռքով եւ Վրաստանում վարդապետներն ու հովիւներ նշանակելն՝ աւելացնում է.

«Յորոց եւ իմ անարժանիս եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ» . . .[1]

Եթէ ընդունենք, որ այս տողն անաղարտ է հասել մեզ, ապա նրանից կարելի է եզրակացնել Կորիւնի՝ Վրաստանի եպիսկոպոս լինելու մասին ։ Սակայն այս դէպքում պիտի ընդունել նաեւ, որ Կորիւնը Մաշթո–

---

[1] Կորիւն, «Պատմութիւն վարուց եւ մահուան սրբոյն Մեսրոպայ վարդապետի մերոյ Թարգմանչի». Ղուկասեան մատենադարան, Թիֆլիս 1913. էջ 23.

ցի Վրացի աշակերտներից էր։ Ինքն էլ այն ամբողջ հատուածը, որում դանւում է նաև Կորիւնին վերաբերող մասը։

«Հրաման առայր այնուհետև արքային Վրաց՝ ի կողմանց կողմանց և ի խառնաղանջ պաստաց իշխանութեան իւրոյ ժողովել մանկունս, տալ ի ձեռն վարդապետին (=Մաշթոցի)։ Զոր առեալ արկանէր ի բովս վարդապետութեանն և հոգևոր սիրոյն եռանդմամբ դադար և զծանր շարաւահոտ զխուժն և զանտաշագործ պաշտամանն ի բաց այնչափ անջատեալ ի հայրենեաց իւրեանց և անյիշատակ ցուցանել, մինչև ասել, թէ «Մոռացայ զժողովուրդ իմ և զտուն հօր իմոյ»։ Եւ արդ զնոսա, որ յայնչափ ի մանկութեան և ի բազմանեայ լեզուացն ժողովեցան, միով աստուածարարբառ պատգամօքն մի արդ կացեալ՝ փառաբանիչս միոյ Աստուծոյ յօրինէր։ Յորոց և իմ անարժանիս եղեալ ի կարգ եկեղեցականութեան վիճակ. որոց առաջինն Սամուէլ անուն, այր սուրբ և բարեպաշտօն, եպիսկոպոս կացեալ տանն արքունականի։ Իսկ իբրև ընդ ամենայն անդր Վրաց կարգեալ զորոց աստուածպաշտութեան՝ այնուհետև հրաժարեալ ի Ցոցանէ՝ դառնայր յերկիրն Հայոց»։[1]

Կասկած չկայ, որ ընդգծուած դերանուանները վերաբերում են վրացիներին ու

[1] Կորիւն, նոյն էջ։

վրացի մանուկներին, «որոնց մէկից եւ անարժանս (=Կորիւնս) եղայ եպիսկոպոսութեան կարգում ու վիճակում, եւ որոնց առաջինը Սամուէլ էր կոչւում» եւ այլն։ Որքան էլ հատուածի ամբողջական վերլուծութիւնը հակում, թւում է Կորիւնի վրացի լինելն ընդունելու, սակայն այս հակասում է մատեանի ու հայ մատենագրութեան բոլոր տեղեկութիւններին, ըստ որոնց Կորիւնն էր «ամէն յեղբարց ի Հայաստան աշխարհէս»։[1] Բաց ի սրանից նոյն մատեանի մէջ բոլոր մասերում ոչ մի ակնարկ չկայ, որ հեռաւոր կրկնութիւն լինէր այս տեղեկութեան, թէ Կորիւնը Վրաստանի գործիչներից է։ Ընդհակառակն, իբրեւ այդպիսին երկրորդ անգամ մատնանշւում է նորից եպիսկոպոս Սամուէլն, այն, «զոր ի վերոյ նշանակեցաք»։[2] Մեր մատենագիրները — Փարպեցի, Խորենացի, Դրասխանակերցի եւ այլն, որոնց քաջ ծանօթ էր Մաշթոցի վարուց եւ մահուան Պատմութիւնը, ոչ ինչ չեն գրում Կորիւնի՝ Վրաստանի եպիսկոպոս եղած լինելու մասին։

Արդ, չէ՞ր կարելի ենթադրել, որ Կորիւնին վերաբերող այս նշանաւոր տողն աղաւաղուած է հասել մեզ։ Եթէ այո՛, ի՞նչպէս կարելի է ուղղադրել այն։

---

[1] Կորիւն, էջ 52։
[2] Կորիւն, էջ 30։

*Նորայր Բիւզանդացին իր «Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք» գրքում յիշատակելով Միքայէլ Չամչեանի, Մկրտիչ Աւգերեանի, Գարեգին Զարբհանալեանի ու Բարսեղ Սարգիսեանի գրական կարծիքը Կորիւնի՝ Վրաստանի եպիսկոպոս լինելու մասին՝ առաջին անգամ առարկել է ընդհանուր դէպք դարձած այս համոզմունքի դէմ: Այդ մէջ բերելով համապատասխան հատուածն՝ աւելացրել է. «Այլագիր հատուածդ խանգարեալ է առանց իրիք երկբայութեան եւ թուի ուղղել.*

«Յորոց եւ զատան արժանիք եղանել ի կարգ եպիսկոպոսութեան վիճակի. *որոց առաջինն Սամուէլ անուն եւ այլն»:*[1]

*Նորայր Բիւզանդացու ուղղումն ընթերցման ճիշտ է անպայման: Սակայն պէտք է դիտել նաեւ, որ նրա ուղղումն ու պնդումը պատճառաբանուած չեն եւ երկրորդ, որ նրա առաջարկած փոփոխակից՝ համեմատաբար դժուար է հնարաւոր փոփոխութիւնների միջոցով ստանալ այն ընթերցուածը, որ այժմ գտնում ենք տպագիր Կորիւնի մէջ:*

*Մեզ թւում է, թէ կարելի է առաջարկել մի ուրիշ, նոր ուղղումն, որ հազիւ* մի քանի տառի *տարբերութիւն ունենալով տպագրից՝ կարող է աւելի ընդունելի լինել*

---

1 Նորայր Բիւզանդացի. «Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք». Տփխիս 1900, էջ 385—388.

ընագրաքննական տեսակէտից, մանաւանդ որ այսպիսի մի ուղղումն դառնելու բանալի տալիս է նոյն ինքն Կորիւնի «Պատմութիւնը»:

Մատեանը Բաղասական երկիրը բարեկարգելու մասին գրում է.

«Եւ զոմանս յիւրոց աշակերտացն վերակացուս իւրեանց կացուցանէր՝ Հանդերձ արամբ քահանայիւ արքունական դրանն, որում անունն Յոնաթան կոչէին:»[1]

Նոյն մատեանում Աղուանից երկրի մասին կարդում ենք.

«Առ որս թագաւոր վերակացուս հաստատացելոցն՝ զերկուս ոմանս յիւրոց աշակերտացն, որ առաջնոյն Ենովք անուն էր և երկրորդին՝ Դանան»:[2]

Վրաստան գնալու առթիւ ասուած է.

«Եւ առնոյր ընդ իւր զոմանս յառաջոյնս յաշակերտաց իւրոց՝ յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց:»[3]

Այս ընթերցումների հիման վրայ.

«Յորոց եւ իՄ ԱՆԱՐԺԱՆԻՍ եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ, որոց առաջինն Սամուէլ անուն»

ուղղագրում ենք այսպէս.

---

[1] Կորիւն, էջ 29.
[2] Կորիւն, էջ 27.
[3] Կորիւն, էջ 22.

«Յորոց եւ (զ)ոՄԱՆՍ ԱՐԺԱՆԻՍ եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ, որոց առաջինն Սամուէլ անուն։»

Մաշթոցը սովորեցնում, վարդապետում է Վրաց աշխարհի մանուկներին, «Հէնց որոնցից արժանաւոր ոմանց եպիսկոպոսութեան կարգի ու վիճակի է հասցնում, որոնցից առաջինը Սամուէլ էր կոչւում։» Ճիշտ այնպէս, ինչպէս անում էր միւս երկիրներում եւ կամ ինչպէս ասուած է նաեւ Սիւնեցիների մասին.

«Եւ ժողովեալ մանկունս առ ի նիւթ վարդապետութեան եւ այնչափ փոյթ ի վերայ ունելով եւ գայլեկարար ուսուցանել եւ խրատել, մինչեւ ի նոցունց իսկ ի վայրենեացն եպիսկոպոսս տեսուչս եկեղեցւոյն կարգել, որոյ անուանն կոչէր Անանիաս։»[1]

Վիճելի տողի առաջարկուած ուղղումը վերացնում է Վրաստանին վերաբերող հատուածի անհարթութիւնն, այլ եւ լուծում մեր մատենագիրների լռութեան գաղտնիքը Կորիւնի՝ Վրաստանի եպիսկոպոս եղած լինելու մասին, քանի որ պարզւում է, թէ Մաշթոցի վարուց եւ մահուան «Պատմութեան» մէջ ոչինչ ասուած չէ եղել հետաքրքրող կէտի մասին յիշեալ իմաստով, եւ թէ ուրեմն ընդհանուր տեղի դարձած ու տարածուած կարծիքը յիրաւի բնագրի աղճատման արդասիք է լոկ։

---

¹ Կորիւն, եջ 21–22։

Գ.

## ԿՈՒՆԴ ԱՐԱՄԱԶԴ

Մովսէս Խորենացին իւր «Հայոց պատմութեան» 1. գրքի ԼԱ (ԼԲ) գլխում Երուանդեան Տիգրանին գովելու նպատակով նրան նմանեցնում է Կունդ Արամազդին: Նրան վերաբերող նախադասութեան վերջին խմբագրութիւնները պատկանում են Մանուկ Աբեղեանին և Ստեփան Մալխասեանին:

Մինչդեռ Աբեղեանը բնագիրը վերականգնում է այսպէս.

«Ոչ Արամազդ ոք, այլ ի կամեցողաց լինել Արամազդ չորից ևս այլոց անուանելոց ամանց Արամազդ. յորոց մին է և Կունդ ոմն Արամազդ»: —

Մալխասեանն, ըստ մեզ, աւելի յաջող խմբագրելով՝ առաջարկում է կարդալ.

«Ոչ Արամազդ ոք, այլ ի կամեցողաց լինել Արամազդ՝ չորից ևս այլոց անուանելոց Արամազդ՝ մի է Կունդ ոմն Արամազդ»:[1]

Այս խօսքը հասկանալու, ինչպէս և Տիգրանին վերաբերող ամբողջ հատուածի իմաստը վերականգնելու համար վճռական

---

1 Տես "Պատմագիրք Հայոց", Հատոր Բ, գիրք Ա. — Մովսիսի Խորենացւոյ "Պատմութիւն Հայոց", աշխատութեամբ Մ. Աբեղեանի և Ս. Յարութիւնեանի, Տփղիս 1913, էջ 85, բնագիր Մ. Աբեղեանի ու ծանօթութիւն Ս. Մալխասեանի:

նշանակութիւն ունի պարզել, թէ Արամազդին տրուած «Կունդ» մականունն ինչ է նշանակում:

Ակնյայտ է, որ «Կունդ» բառին սովորական «կնտատ», «ճաղատ» կամ «քաչալ» բառի իմաստ տալը կը հակասէ դիտաւորութեանը Խորենացու, որ ուզեցել է գովել Տիգրանին: Ի՞նչ երեւելի գովասանք է մեկին գովելու համար ասել, թէ՝ ինչպէս որ չորս Արամազդներից միայն մէկն է քաչալ Արամազդ, այնպէս էլ սա միակն է, բարձր ու արժանաւոր շատերից: Խորենացին, մեծատաղանդ մի քերթող, չէր կարող իր ամենասիրելի հերոսին այնքան անճաշակօրէն նմանեցնել մի քաչալի, թէկուզ սա լինէր քաչալ . . . Արամազդ: Այսպիսով, ինչպէս ժամանակին ճիշտ դիտել է Միքայէլ — Գալուստ Տէր — Մկրտիչեանը, «Կունդ» բառը սովորական անարգական առումով հասկանալով յիշեալ նախադասութիւնը բացատրելն անհիմն է:

Ինչպէս յայտնի է, Խորենացու խոսյական թարգմանիչն եւ Լանգլուան փորձել են «Կունդ» բառը բացատրել պարսկերէնով: Նրանց ասելով պարսկերէնում այս բառը նշանակում է «հզօր», «աներկիւղ», «պատերազմասէր»[1]. «Կունդ» բառին այս իմաստը

[1] Համմ. Միքայէլ (Գ. Տ. Մկրտչեան), «Խորենացու պատմութեան ու առ [illegible]», Վաղարշապատ 1896, էջ 5 ու Մովսէս Խորենացու «Հայկական պատմութիւն»:

տալը մատենագրական վերականգնում է Խորենացու տեքստի մէջ նշանակութիւնը: Սակայն հէնց այստեղ էլ խակոյն եւեթ հարց է ծագում, թէ հատուածի խակական նշանակութիւնը երեւան հանելու համար արդեօք կարիք կա՞յ անպայման պարսկերէնին դիմելու: Մի՞թէ չէր կարելի հայերէնի օգնութեամբ լուսաբանել այս մթին կէտը:

«Կունդ Արամազդ» արտայայտութիւնը հայերէնով բացատրելու մի փորձ արել է դրանից աւելի 30 տարի առաջ Միաբանը — Գալուստ Տէր-Մկրտչեանը ներքեւում, ծանօթութեան մէջ յիշատակուած իր աշխատութեան էջերում: Ձեռքի տակ ունենալով Խորենացու «Հայոց պատմութեան այն ձեռագիրը, որ գրուած է 17րդ դարում Ներսէս գրչի ձեռքով («Պատմագիրք Հայոց»-ի հրատարակութեան Կ ձեռագիրը) եւ նկատելով, որ վերջինիս մէջ «Կունդ Արամազդ» կամ «Կունդ ամն Արամազդ» բառերի փոխարէն գրուած է «Կատար ամն Արամզդ»՝ Տէր-Մկրտչեանը պնդում է, թէ Խորենացու ակզբնագրում եղել է «Կատար ամն Արամազդ» կամ «Կատարումն Արամազդ»: Ըստ Տէր-Մկրտչեանի՝ «Կատարումն Արամազդ» կարող էր նշանակել «լրումն, կատարեալ, այլ եւ խնդրուածով

---

աշխարհաբար թարգմանեց եւ լուսաբանեց Խորէն Ծ. Վ. Ստեփանէ. Ս. Պետերբուրգ 1889. ծանօթութիւններից բաժին, էջ 121:

կատարող Արամազդ», իսկ «կատար ամն Արամազդ»-ը՝ «գլխաւոր ամն Արամազդ»։

Հապա «Կունդ Արամազդ» կամ «Կունդ ամն Արամազդ» ընթերցուածնե՞րը։ Նրանց ծագումն ի՞նչպէս պէտք է բացատրել։

Գալուստ Տէր-Մկրտչեանն այս ընթերցուածների երեւան գալու գաղտնիքը բացատրում է «Նպատակաւոր թարգմանութեամբ»։

«Արամազդի պատուարեր ու մեծարական ածականները, — ասում է Միաբանը, — կարող էր թարգմանել անարգական բառով քրիստոնեայ եւ նեղահայեաց ընդօրինակողից կամ Յունացի մեկնող վարժապետ-վարդապետից։ . . . Սկզբնագրում եղել է «Կատար» եւ ոչ թէ «Կունդ»։ Եւ կունդն ի՞նչ է, եթէ ոչ կատարի անարգական թարգմանութիւնը։ Յունացու բարեպաշտ մեկնիչ վարդապետը չէ կամեցել չաստուած Արամազդին անուանել «կատար, գլուխ», ուստի եւ կոչել է քաչալ-գլուխ, այն է «Կունդ»։[1]

Տէր-Մկրտչեանի այս ուղղումն, ի՞նչ խօսք, հարթում, հասկանալի է դարձնում Յունացու բնագիրը։ Բայց այս դէպքում ծագում են նորանոր առարկութիւններ։

Խնդիրն այն է, որ «Կունդ» կամ «Կունդ ամն» ընթերցուածներն ունեն Յունե-

---

[1] Գ. Տ. Մկրտչեան, Նոյն գիրք, էջ 4—7։

կամ «կատարումն Արամազդ», այլ «Կունդ Արամազդ» կամ «Կունդ ամն Արամազդ», ինչպէս որ ունեն ձեռագրերի մեծամասնութիւնն ու սրա մէջից էլ ընտրելագոյնները, իսկ յետոյ, ժամանակի ընթացքում, երբ այս վերջին արտայայտութիւնները սկսել են անհասկանալի դառնալ, մեկնիչ վարժապետ—վարդապետը թարգմանել է «կատար Արամազդ» կամ «կատարումն Արամազդ», եւ նրա այս թարգմանութիւնը, որն անպայման ուղղամիտ ու ոչ թէ միտումնաւոր, ոչ թէ ծաղրական թարգմանութիւն է, գրիչները մտցրել են մի քանի նոր ձեռագրերի մէջ։ Այս ենթադրութեան դէպքում «Կունդ» այլ եւս չէր կարող «քաչալ» նշանակել, այլ մի ուրիշ բան, ամենայն դէպս մի դրական յատկութիւն։

Ունի՞ արդեօք «Կունդ» բառը մեր լեզւում մի այլ նշանակութիւն, որ բանալի ծառայէր այս փականքը բանալու համար։ Ունի, եւ մանաւորապէս մեր բարբառները բաւական առատ նիւթ ու հաստատուն կռուան են տալիս Խորենացու այս նշանաւոր խօսքը հասկանալու եւ բացատրելու համար։

Հրաչեայ Աճառեանի «Հայերէն գաւառական բառարանն» ու Ամատունու «Հայոց բառ ու բանը» ցոյց են տալիս, որ մեր բարբառներում կայ ոչ միայն բառի «կունդ» ձեւն, այլ եւ «կոնդ» ձեւը, որ աւելի գործածական է։ Որ «կունդ» ու

*«կոնդ» համանիշ բառեր են, այս ապացուցւում է հետեւեալ փաստով, — գլուխկոնձի անելուն կամ գլուխկոնձի տալուն բարբառներում ասում են թէ «կունդկի անել, կունդկի տալ»*[1] *ու թէ «կոնդկի անել, կոնդկի տալ»։*[2]

*Աճառեանի «Բառարանը» չունի «կունդ» ձեւն, իսկ բառ Ամատունու «կունդ» նշանակում է «Ջրաղացի ցցի կենդրոնին հանգցրած բոլորակ* հաստ *փայտը, որի շուրջը շարում են փառերը (Սիփան, Ալջաւազ)։ Տաճկերէն՝ «թօփ»։*[3] *Սրան պէտք է աւելացնել, որ ռուսահայ բարբառներում «Կունդ» ասում են նաեւ անուի «թօփին», ինչպէս եւ մի մանկական պտտուող խաղալիկի — «ճեռի»* գլխին։[4]

---

1 «Էմինեան ազգագրական ժողովածու», Հատոր Թ. — Հր. Աճառեան, «Հայերէն գաւառական բառարան», Թիֆլիս 1913, էջ 604 ու Սահակ Վ. Ամատունի, «Հայոց բառ ու բան», Վաղարշապատ 1912, էջ 366։

2 Ամատունի, 357։

3 Ամատունի, 366։

4 Ց. Պողոսեանի «Լիակատար բառարանը ռուսերէնից հայերէն», Թիֆլիս 1903, էջ 1076, ռուսերէն ступица բառի դիմաց ունի «անուի, սրան կունդը», եւ նոյնակզ իբրեւ օրինակ բերուած է հետեւեալ խօսքը. «Այնպէս ցուրտ էր, որ անիւները մինչեւ կունդը մէջը թաղուած էին»։ Արեւելահայ մանկական գրող Սիմոնի «Ճեռակի» պատմուածքում կարդում ենք. «Ծաղկազարդի շաբաթ օրը Սիմոն ու Ընուշը առցէն մի մի ճեռ ունէին, բայց ինչ ճեռ.... Կունդը հանի, ըկզուակը հացի, կոթը բոխի, մի խառրով ամենալաւ ճեռերը, ու ինչ ձայն ունէին — ճռճռում էին, ճռճռում»։ — «Հասկեր» մանկական

Աւելի գործածական ու բազմաթիւ առումներ ունի «կոնդ» բառը։ Նախ կոնդ=գերան (այսինքն՝ հաստ փայտ)։[1] Ապա կոնդ=բլուր[2]=թումբ, դար, բլուր[3]։ Այսինքն կոնդ նոյն իմաստն ունի, ինչ որ մենք ասում ենք կատար, սար։ Յետոյ՝ կոնդ=պտեղ, իսկ պտեղ նախ=«ոտաց բթամատի ծայր» ու երկրորդ=վէգի ոտքը, տաճկերէն՝ օմրա։[4] Այստեղ պէտք է դիտել, որ տաճկերէն օմրան այն է, երբ վէգը գլխիվեր է կանգնում։

«Կոնդ» բառի այս առումները արդէն որոշ իմաստ չջնջում են։ Սակայն Աճառեանի «Բառարանը» տալիս է նոյնի նաև այնպիսի գործածութիւններ, որոնք մերկացնում են բառի բուն նշանակութիւնը։ Այսպէս, օրինակ, ըստ Աճառեանի՝ Ղարաբաղում ու Ղարադաղում «կոնդ» նշանակում է «կոճղե-ղաւոր բոյսերու տակը մնացած հաստ գլուխ»։ Օրինակ, ասում են՝ սոխի կունդ. նշանակում է սոխի գլուխ, սոխի մեծ գլուխ։ Նոյն աղբիւրից իմանում ենք, որ կոնդ=մարդու գլուխ. կայ անէծք — կոնդդ թաղեմ=գլուխդ թաղեմ։ Կայ նաև «կոնդում անել», որ նշանակում է «գլուխ տանել»։

---

ամսագիր, խմբ. Դաւ. Լիսիցեանի, Թիֆլիզ 1912, Թ. 2. Փետրուար, էջ 51.

[1] Աճառեան, 591.

[2] Ամատունի, 357.

[3] Աճառեան, 591.

[4] Ամատունի, 357 ու 569.

*Ասում են. «Ձին կոնդով է անում», այսինքն «Ձին ճանճերը քշելու համար* գլուխը *շարժում է»։*[1] *Այս օրինակներին մենք մեր կողմից կարող ենք ավելացնել հետևյալը։ Տողերս գրողի ծննդավայրում — Մակուում երեխաների հետ խաղալիս երբ ուզում էին, որ մանուկը* գլուխը *շարժէ, թափահարէ այս ու այն կողմը, մանուկների լեզուով կանչում էին. — «կոնդի, կոնդի արա», կամ ուղղակի՝ «կոնդի–կոնդի»։*

*Այստեղից պարզվում է, որ հայերէն բառարաններում «կունդ» կամ «կոնդ» բառն ունի մէկ ընդհանուր ու հիմնական իմաստ և նշանակում է հաստ, մեծ, ծայր, կատար, գլուխ։*

*Ուրեմն Կունդ Արամազդ (կամ Թերևս նոյն իսկ գրաբարում էլ Կոնդ Արամազդ) նշանակում է մեծ, հզօր Արամազդ, մէկը, որ Արամազդների գլուխն է։ Ուրիշ խօսքով՝ Կունդ կամ Կոնդ Արամազդ արտայայտութիւնը տառացի համազօր է Մեծն Արամազդ ասութեանը։*

*Այժմ արդէն կարող ենք տեսնել, թէ ինչպէս էր գովում Խորենացին բուն և առաջին Տիգրանին։ Ինչպէս արդէն ասել ենք, խօսքի ճիշտ խմբագրութիւն համարում ենք Ստ. Մալխասեանի առաջարկածը։*

*«Արամազդ աստղ գոյութիւն չունի, — ասում է Խորենացին, — սակայն նրանց*

---

[1] Աճառեան, 592.

համար, որոնք կամենում են, որ Արամազդ լինի (=որոնք կարծում են, թէ Արամազդ կայ), Արամազդ կոչւած ուրիշ չորսի մէջ մի հատիկ է Կունդ (կամ Կոնդ) Արամազդը (=Մեծն Արամազդը)։ Հէնց այսպէս էլ շատերն են Տիգրան կոչուել, սակայն մի հատիկ ու մենակ է Հայկազուններին մի-ջից, որ Աժդահակին սպանեց եւ նրա տունն ու վիշապամայր Անոյշին գերի տարաւ»։

Խորենացու թարգմանիչներից մէկը — Խորէն Ստեփանէն դժուարութեան դէմ առ-նելով գրել է․ «Այս հատուածը կարծես յե-տոյ մուծուած լինի, որովհետեւ չէ կապւում նոյն գլխի բովանդակութեան հետ»։[1] Մենք այժմ իրաւունք ունենք նրա նախազգուշութիւնը «կունդէի» չուռ տալով ասելու․ «Որովհետեւ հատուածը սերտ կապւում է նոյն գլխի բովանդակութեան հետ, ուստի անհնարին է կարծել, թէ այն յետոյ է մուծուած»։

Մովսէս Խորենացին, որ կորստից փրկել է հայ ժողովրդական բանահիւսու-թեան թանկագին հատուածներ, Կունդ կամ Կոնդ Արամազդով մեզ թողել է մի մեծար-ժէք նմուշ նաեւ հայ ժողովրդական դիցա-նութիւններից։

---

[1] Մովսէս Խորենացու «Հայկական պատմութիւն», աշխարհաբար․ ծանոթութիւնների բաժին, էջ 121–122։

## Դ.

## ԿՈՂՄՆ ՍԵՊՀԱԿԱՆ ԳՆԴԻՆ — ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ

*Հայ մատենագրութեան մէջ մի քանի տեղ (Փաւստոս Բիւզանդ, Սեբէոս, «Գիրք Թղթոց») պատահում են «Սեպհական գունդ», «Կողմն Սեպհական գնդին» արտայայտութիւնները:*

*Ո՞րն է «Սեպհական գունդը», եւ ո՞ր երկիրն են հասկանում մեր մատենագիրները «Կողմն Սեպհական գնդին» ասելով:*

*Որքան մեզ յայտնի է, հայ բանասէրներից առաջին անգամ Ալիշանն է այն կարծիքը յայտնել, թէ «Կողմն Սեպհական գնդին» Մարդպետական աշխարհն է կամ Մարդաստանը: Ալիշանն ըստ իւր սովորութեան, որ յաճախ ոչ փաստեր է բերում եւ ոչ էլ որոշ աղբիւրներ յիշատակում, այս անգամ էլ մատնանշում է այս երկու տեղանունների նոյնութիւնն՝ առանց հիմնաւորելու: Սակայն եւ այնպէս փաստը մնում է փաստ, որ այս կարծիքն առաջին անգամ հրապարակ է հանել «Այրարատի» հեղինակը:*[1]

1901 *թուականից յետոյ, երբ լոյս էր տեսել «Գիրք Թղթոց», Ալիշանի մերկ յայտարարութիւնն ապացոյցներ էր ստա-*

---

[1] Հ. Ալիշան, «Այրարատ», Վենետիկ 1890, էջ 420:

նում: «Թղթոց» այս ժողովածուի յատուկ անունների ցանկը կազմող բանասէրն արդէն «Մարդպետական» բառի դիմաց փակագծում դնում է «Սեպհական գունդ», Զ. դարի հայ բարձրաստիճան մի հոգեւորականի — Գրիգորի անուան դիմաց դնում «եպիսկոպոս Մարդպետական կամ Սեպհական գնդին» (ընդգծումը «Գիրք Թղթոց»ի յատուկ անուանց ցանկ կազմողինն է)՝ նոյնը միեւնոյն ընդգծումով կրկնելով Է. դարի սկիզբներում ապրող մի այլ եպիսկոպոսի — Թէոդորոսի մասին: Իբրեւ վկայութիւն մատնանշուած են ժողովածուի 70, 73, 76 եւ 81 էջերն առաջինի համար, իսկ 146, 151 ու 194 էջերը երկրորդի համար: Այսպիսով, բացի Ալիշանից, մի այլ բանասէր երեք անգամ շեշտել եւ 7 վկայութեամբ հաստատել է յիշեալ երկու տեղանունների նոյնութիւնը:

Ժամանակագրական կարգով երրորդ հեղինակը, որ խօսել է Սեպհական գնդի կողմի մասին, Հ. Հիւբշմանն է, որ այս խնդիրը շօշափել է «Հին հայոց տեղանունները» նշանաւոր աշխատութեան մէջ: Թէեւ Հիւբշմանի գիրքը լոյս է տեսել «Գիրք Թղթոցից» 3 տարի յետոյ, 1904 թուականին, սակայն դժբախտաբար մեծանուն գիտնականը չէ օգտուել «Թղթոց» ժողովածուից, ուստի եւ այս կէտում թերիմացութեան մէջ է ընկել: Սրա կարծիքով Հին Հայաս-

տանում չորս երկիր կայ «գնդերի» անուն-ներով. —

1. Տանուտէրական գնդի,
2. Վասպուրական գնդի,
3. Սեպհական գնդի ու
4. Մարդպետական գնդի։

Ձեռքի տակ չունենալով «Գիրք Թղ-թոցի» յուշարարութիւնները, այլ եւ սխալ մեկնելով Փաւստոս Բիւզանդի մէկ ու Սե-բէոսի երկու հատուածները՝ Հիւբշմանը կարծիք է յայտնում, թէ «կոչման Սեպհական գնդին» պէտք է Տուրուբերանը լինի։ Հէնց այս պատճառով էլ «Սեպհական գնդի եր-կրի» մասին նա խօսում է այն գլխում, որ նուիրել է Տուրուբերանին։ «Սեպհական գնդի երկիրը» Տուրուբերան տեղափոխելով՝ նա արդէն չէր կարող նոյնութեան թելեր անցկացնել Սեպհական գնդի ու Մարդպե-տական գնդի միջեւ, ուստի եւ վերջինիս երկիրը համարում է առանձին երկիր եւ դնում է չորրորդ տեղն այն երկիրների շար-քում, որոնք կոչւում էին «գնդերի» ա-նունով։[1]

Ն. Ադոնց «Հայաստանը Յուստինիա-նոսի ժամանակ» գրքում (լոյս է տեսել 1908ին) անտես է առնում Հիւբշմանի կար-ծիքը եւ վերադառնում Ալիշանի ու «Գիրք

---

[1] H. Hübschmann, Die altarmenischen Ortsnamen, Strassburg 1904 էջ 253—254.

թղթոցի բառաէրի զուգադրութեամբ, թէեւ իր այս նախորդների անունը չէ տալիս։ Նրա կարծիքով էլ Մարզպետական ու Սեպհական համազօր աշխարհագրական հասկացողութիւններ են։ Սեպհական բառը հին Վասպուրական բառի համեմատաբար նոր ձեւն է, եւ Սեպհական ձեւի երկիրը յարաբերում է Վասպուրական ձեւի երկրին, ինչպէս մասն՝ ամբողջին։[1]

Թէեւ Ադոնցը չէշտում է «սեպհական» ու «վասպուրական» բառերի լեզուաբանական նոյնութիւնը, թէեւ նրան յայտնի է, որ ոչ միայն Մարզպանանի ընիկ իշխողները են մարզպետ կոչուել, այլ եւ Վասպուրականի տէրերը, այսինքն՝ Արծրունիք[2], սակայն եւ այնպէս նրա մտքով չէ անցնում, թէ արդեօք երկիր կամ կայմն

---

[1] Адонц. "Армения в эпоху Юстиниана". СПВ. 1908, стр. 318–320.

[2] Ադոնցն իրաւամբ նոյնացնում է "գլխաւոր տէրն Արծրունեաց եւ մարզպետ Միհրշապուհին" ու Ներշապուհ Արծրունուն։ Հմմտ. Ղազարայ Փարպեցւոյ "Պատմութիւն Հայոց", աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեանի եւ Ստ. Մալխասեանցի, Տփղիս, 1904, էջ 71 եւ 45, 47, 75, 78, 86, այլ եւ Եղիշէի "Պատմութիւն Վարդանանց", Թիֆլիս, 1912, էջ 51, 90, 147։ Այսպիսով պարզւում է, որ Միհրշապուհ ու Ներշապուհ միեւնոյն անուններն են։ Դիտենք, որ Միհրշապուհ անունը նախ քան Ներշապուհ ձեւին հասնելն ունեցել է մի միջնորդ ձեւ — Մերշապուհ, որ պահել է Թովմա Արծրունին։ Հմմտ. "Պատմութիւն տանն Արծրունեաց", Թիֆլիս, 1917, էջ 141։ Այս լրացումով ունենում ենք անուան հետեւեալ եռաստիճան զարգացումը. *Միհրշապուհ — Մերշապուհ — Ներշապուհ*։

Սեփհական գնդին չէ կարող երբեմն հա-մարել լինել ոչ միայն Մարզպետական գնդի կողմին կամ երկրին, այլ և Վասպուրական գնդի երկրին կամ կողմին կամ կարճ՝ Վաս-պուրականին։

Մեզ թւում է, թէ երկու վկայութիւն կայ մեր մատենագրութեան մէջ, որոնք հաստատում են մեր այս ընդարձակ ըմբռնումը։ Սրանցից մէկը մէջ է բերում նաև Հիւբշմանը, սակայն Սեփհական գունդ=Տուրուբերան տարբերութիւնը նրան թոյլ չէ տալիս ճիշտ հասկանալ յիշատակած հա-տուածը։ Փաւստոս Բիւզանդի Ե. գիրք. ԽԴ. գլխում, որտեղ պատմւում է Մեհրուժան Արծրունու՝ Հայաստան արշաւելու և Մա-նուէլ Մամիկոնեանի հետ ունեցած պատե-րազմի մասին ասւած է.

«Դայր հասանէր (Մեհրուժան) ամե-նայն բազմութեամբ զօրացն Պարսից յեր-կիրն Հայոց և թողոյր զբանակ զօրացն Պարսից ի գաւառին Կորճէից և ինքն իւրով սեփհականաւն գնդաւն հրոսին ժողովեալ մեկնէր գաղտնէր յԱրեաց գնդէն։ Կամէր յանպատրաստից գալ անկանել ի վերայ Մանուէլին» . . .[1]

Մի անգամ մտաբերելով և այն սկըզ-բունքը դնելով, թէ Տուրուբերան=կողմն

[1] Փաւստոսի Բիւզանդացւոյ «Պատմութիւն Հայոց», Հրատարակութիւն Գ. Գալուստեանց, Թիֆլիս, 1913, էջ 375—376։

Սեպհական գնդին՝ Հիւբշմանը գրում է․ «Արանից պէտք է տարբերել Փաւստոս Բիւզանդի յիշած սեփհական գունդը, որ այնտեղ լոկ նշանակում է «իր անձնական-սեփական գունդը»:[1] Այն ինչ, երբ ընդունում ենք, որ «սեպուհական» բառը ծագում է «վասպուրական» բառից, երբ տեսնում ենք, որ Վասպուրականի տէրը կոչւում է մարզպետ=սեպհական գնդի պետ, այս կարելի է եզրակացնել, թէ տուեալ դէպքում, երբ պատմւում է Արծրունեաց մեծ իշխանի «Սեպհական գնդի» մասին, խօսքը վերաբերւում է ոչ թէ նրա անձնական գնդին, այլ Վասպուրական գնդին:

Երկրորդ օրինակն աւելի ակներեւ է:

Թէոդորոս Ռշտունու առաջնորդութեամբ է․ գարում հայերն ապստամբում են բիւզանդացոց դէմ եւ հնազանդում արաբներին: Կոստանդին կայսրը Հայաստան է արշաւում: Նրան հնազանդութիւն յայտնելու համար կայսեր մօտ են գալիս Հայաստանի շատ իշխաններ, բացի Ռշտունուց ու մերձաւոր համախոհներից:

«Յայնժամ, պատմում է Սեբէոսը, նզովեաց թագաւորն եւ ամենայն զօրք իւր զՌշտունեաց տէրն եւ լուծին զնա ի պատուոյ իշխանութենէն եւ արձակեցին այլ

[1] „Davon zu unterscheiden *sep'hakan gund* bei FB, das nur 'das eigene Korps, bedeutet". H. Hübschmann, ibid. S 254.

այր փոխանակ նորա եւ ի այր ընդ նմա։ Որ երբեւ չոգան, հասին առ նա, կալան (զօրքն Ուշտունեաց) զնոսա եւ ձաղեցին եւ ետուն տանել ի բերդն Բաղիշոյ եւ զամանս ի կղզին Բզնունեաց։ Եւ ինքն (Ուշտունին) չոգաւ եմուտ յԱղթամար կղզի եւ զօրացն կողմանցն այնոցիկ ետ հրաման՝ երթալ ամրանալ յիւրաքանչիւր գաւառի։ Եւ էին ընդ նմա միաբան Վրացին եւ Աղուանն եւ Սիւնին, որք ըստ հրամանի նորա գնացին յիւրաքանչիւր աշխարհս եւ ամրացան ի նմին։»[1]

Ուրեմն չորս գլխաւոր խմբեր կային տարածուած․

1․ Ուշտունիք, որոնց իշխանն ամրացել էր Աղթամարում,

2․ Վրացիք,

3․ Աղուանները ու

4․ Սիւնիք։

Յիշեալ խմբերի համաձայն էլ կայսրը զօրամասեր պէտք է ուղարկէր ըմբոստացած վայրերն՝ ապստամբներին ճնշելու։ Եւ իրօք, ինչպէս պատմում է նոյն մատենագիրը, —

«Արար արքայ զՄուշեղ Մամիկոնէից տէր՝ իշխան Հայոց հեծելոցն եւ արձակեաց զնա

[1] ի կողմն Սեպհական գնդին զ հազարաւք։ Նոյնպէս արձակեաց ի դուրայ

---

1 Սեբէոսի եպիսկոպոսի "Պատմութիւն ի Հերակլն". Ղուկասեան մատենադարան, Թիֆլիս․ 1912․ էջ 226—227․

[2] ի Վիրս եւ

[3] յԱղուանս եւ

[4] ի Սիւնիս՝ քակեալ գնաց ի միաբանութենէն :»

Վիրք, Աղուանք ու Սիւնիք, ուր զօրքեր են ուղարկուած, յայտնի վայրեր են: Որն է հապա «Կողմն Սեպհական գնդին», որտեղ իշխում էր ազատամբ Ռշտունեաց տէրը: Անշուշտ ոչ փոքրիկ Մարդաստանը կամ Մարդպետական գնդի երկիրը, քանի որ անժխտելի փաստ է, որ Ռշտունիք, Աղթամարն ու Բզնունեաց կղզիները Մարդաստանում չէին գտնւում, այլ Մարդաստանից դուրս, Վասպուրականում, Վասպուրականի սրտի մասերում: Ուստի կարծում ենք, որ չորս ազատամբ վայրերի վերագրեալ դասադրութիւնն անտարակուսելիօրէն ապացուցում է, թէ «կողմն Սեպհական գնդին» կարող է միայն «կողմն Վասպուրական գնդին» նշանակել:

Սեբէոսի յիշեալ հատուածի շարունակութիւնը նոյնի կրկնութիւնը լինելով՝ էլի մի անգամ հաստատում է մեր ասածը:

«Այլ զաւրքն նստէին չորք զօրքային ի լեռնակողմանն եւ ի դաշտակողմանն: Իսկ (ՎԻՐՔՆ) Թէպէտ առ ժամանակ մի ոչ կամեցան հնազանդել, ապա յետոյ նուաճեալ ի ծառայութիւն: Բայց յԱղուանն եւ ի Սիւնին եւ գունդն Սեփական ոչ հնազանդ-

---

¹ Սեբէոս, էջ 227—228

դեցան, զորոց զերկիրն ասեն առեալ՝ տարան, մինչ գաւին, եւ դարձան անդրէն առ արքայ:»[1]

Փակագծի մէջ դրուած «Վիրքն» բառը Սեբէոսի բնագրում չկայ. մենք ենք աւելացնում: Սրանով կրկին մէջ տեղ է գալիս ապստամբների քառանուն ցանկը, որ ծանօթ է մեզ: Սրանցից երեքը չեն հնազանդւում եւ պատժւում են. յարատեւ ըմբոստներն են՝ Աղուանք, Սիւնիքն ու Սեպհական գունդը: Ո՞վ կարող է լինել «ի ծառայութիւն» չորրորդը: — Անշուշտ եւ միմիայն վիրացիք:

Ապստամբների քառանուն ցանկի վերականգնումը նորից ապացուցում է, թէ փոքրիկ Մարդպետանի մասին խօսք չի կարող լինել: Ապստամբ ու մեծազօր Սեպհական գունդը Վասպուրականի գունդն էր, իսկ յայտարարուած կողմն Սեպհական գնդին՝ Վասպուրականը:

## Է.

## ԵՐԵՒԱՆԸ ՍԵԲԷՈՍԻ «ՊԱՏՄՈՒԹԵԱՆ» ՄԷՋ

Հայ պատմագիրներից Երեւանի անունն առաջին անգամ տալիս է Սեբէոսը Է. դարում: Պատմելով արաբացոց առաջին արշաւանքներից մէկի մասին, որ տեղի է

1 Սեբէոս, էջ 228:

ունենում Թէոդորոս Ռշտունու ու Ներսէս Շինողի ժամանակ, նա տալիս է արաբական զօրաշարժի ընդհանուր պատկերն այս խօսքով.

«Եկն զօրն Իսմայէլի, եւ բաժանեցան յերիս. առաջ մի յԱյրարատ, առաջ մի ի Սեպհական գնդին կողմանս եւ առաջ մի յԱղուանս։»[1]

Արաբական բանակը բաժանւում է երեք զօրախմբի. որանցից մէկը գնում է Այրարատ, երրորդն՝ Աղուանից աշխարհն, իսկ երկրորդն՝ «ի Սեփհական գնդին կողմանս», որն, ինչպէս տեսել ենք Վասպուրական էր։

Այրարատ ու Աղուանից աշխարհ գնացած «առաջ»ների կամ զօրախմբերի մասին Սեբէոսը իր ասելիքն ամփոփում է հետևեալ կարճառօտ հատուածով.

«Իսկ այն զօրն, որ ի կողմանս Այրարատեան, եհար սրով մինչ ի կողմանս Տայոց, Վրաց եւ Աղուանից, առ գերութիւն եւ եկն էանց ի Նախճաւան առ այն զօր, որ մարտ եդեալ կայր հուէին ընդ բերդին Նախճաւանի, բայց առնուլ ոչ կարացին զնա։ Աւերին զերկրն Արամայ եւ սատակէին զնոսա սրով եւ զկանայս եւ զմանկունս գերի վարեցին։»[2]

[1] Սեբէոսի եպիսկոպոսի "Պատմութիւն ի Հերակլն", Թիֆլիս, 1912, էջ 188։

[2] Սեբէոս, էջ 191։

Աւելի երկար խօսում է Սեբէոսն այն «տաճիկ»ի կամ զօրավարի մասին, որ ուղարկուած էր «ի կողմանս Սեփհականն գնդին»: Այստեղ մանրամասն պատմում է մանաւանդ Արծափի կռիւն ու տուժը, որ մէջ չենք բերում՝ մեր նիւթի տեսակէտից անկարեւոր լինելու պատճառով: Սակայն շատ հետաքրքրական է Սեբէոսի պատմութեան այն հատուածը, որ պատմում է դէպքերը մինչեւ Արծափի կռիւը:

«Արդ, որք ի կողմանս Սեփհականն գնդին, արշաւեալ սփռեցան եւ հարեալ զամենայն կողմանսն զայնոսիկ սրով սուսերի՝ առին զաւար եւ զգերութիւն: Եւ եկին ժողովեցան ի յԵՐԵՒԱՆ եւ մարտեան ընդ բերդին եւ ոչ կարացին առնուլ: Եկին ի յԱրդաղաս եւ ոչ նմա ինչ կարացին առնել: Գնացին անտի եւ բանակեցան յԱրծափս՝ հանդէպ բերդին առ ջրովն: Եւ սկսան պատերազմել ընդ բերդին»[1]:

Այս հատուածում, որի վրայ մինչեւ այժմ ուշադրութիւն չեն դարձրել բանասէրները, զարմանալի է Երեւանի յիշատակութիւնը: Արաբ զօրքերը գալիս են «ի Սեփհական գնդին կողմանս», եւ այստեղ յանկարծ . . . «ժողովեցան ի յԵրեւան եւ մարտեան ընդ բերդին . . .» Ո՞րտեղից ո՞րտեղ: Ինչ էլ որ ընդունենք կողմն Սեփհական գնդին — Մարդաստան, թէ Վասպու-

[1] Սեբէոս, էջ 188–189:

քական — յամենայն դէպս ոչ առաջնում ու ոչ էլ երկրորդում Երեւան անունով մայր չկայ ու չի եղել: Կայ եւ եղել է Երեւան, որ Այրարատումն է:

Ուրեմն ինչո՞վ պէտք է բացատրել Սեբէոսի այս հաստատուած Երեւանի անակնկալ երեւոյթը:

— Դարձեալ ձեռագրի աղճատմամբ: «Երեւանի» փոխարէն սկզբնագրում եղել է մի այլ, շատ կամ քիչ նման անուն:

Ո՞րն է այն մայրն, որ առաջին անգամ կարող են սար գրած լինել արաբներն «ի կողմն Սեփհական գնդին=Վասպուրական աշխարհին:

Սեբէոսի մի այլ հատուածը, որ նկարագրում է մի ջոկ արշաւանքի ժամանակ արաբական մէկ ուրիշ զօրաշարժի ճանապարհ, նպաստում է առեղծուածի լուծմանը:

«Եւ ճանապարհ կալեալ (Իսմայէլացւոցն) ի Բերկրոյ ձորն ընդ Որդորու եւ ընդ Կոգովիտ՝ թափեցան յԱյրարատ:»[1]

Առաջին հատուածի մէջ, որտեղ յիշատակուած է կարծեցեալ Երեւանը, զօրաշարժի ճանապարհն անցնում էր — Որդորու — Արծափ (վերջինս Կոգովտումն էր) գծով: Իսկ այս երկրորդ զօրաշարժի ժամանակ՝ Բերկրոյ ձոր — Որդորու — Կոգովիտ գծով: Երկու դէպքում էլ զօրաշարժի գիծն անցնում է Հարաւից Հիւսիս:

1 Սեբէոս, էջ 175:

միտքին վերաբերում է Սեբէոսի յիշեալ հատուածի կողմից հակասութիւնն է։ Եւ որովհետեւ Սեբէոսը մի ուրիշ տեղ այլ եւս Երեւանի անունը չէ տալիս, նշանակում է Սեբէոսի «Պատմութեան» մէջ Երեւանի մասին յիշատակութիւն չկայ առհասարակ։[1]

Ի վերջոյ, այն հանգամանքը, որ «Ի կողմն Սեփհականն գնդին» արշաւող արաբական զօրախումբն իւր յարձակումն սկըսում է Աւեստանից, որը Վասպուրականի Առբերանի գաւառումն էր եւ ոչ թէ Մարզպատանում, նորից ու նորից հաստատում է նախորդ, այն է՝ Դ. գլխում մեր ասածը, թէ «կողմն Սեփհականն գնդին» երբեմն գործ է ածւում ոչ միայն Մարզպատանի, այլ եւ «կողմն Վասպուրական գնդի», այն է՝ Վասպուրականի իմաստով։

---

[1] Այսպիսով եզակի հայ աղբիւրը, որ Է. դարից այն էլ դարի սկզբից պահել է Երեւանի մասին մի ամբողջ կանոնական յիշատակութիւն, "Գիրք թղթոց" է, որտեղ հոգեւորականների ժողովում հանդէս է գալիս «Դաւիթ Երեւանայ»։ Տես "Գիրք թղթոց", Թիֆլիս. 1912. էջ 151։ Ըստ մեր "միակ" յիշատակութիւն, որովհետեւ նոյն էջի կարծեցեալ երկրորդ յիշատակութիւնը — "Ջաջիկ Երեւանից", ինչպէս պարզել է Սա. Կանայեանցը Ոսկանեանի վրայ հիմնելով, սխալագրութիւն է. պէտք է լինի "Ջաջիկ Արտամէտից"։ Համեմ. Սմբատ Կանայեանց "Ընդդէմ պատմանքի Հին Հայաստանի". Էջմիածին. 1914 էջ 96. ծանօթ. 4րդ.



